№ 56 «ՅԱՌԱՋ»-Ի ԳՐԱԴԱՐԱՆ № 56

ՊՐՈՖ. Ն. ԿԱՐԻՇԵՒ

# ՏՆՏԵՍԱԳԻՏԱԿԱՆ ԶՐՈՅՑՆԵՐ

Գինն է 20 կոպ.

ԹԻՖԼԻՍ
Էլեկտրական տպարան «ՀՈՐՄԻԶ» Ա. Պ. Եղիազարեանի.
Մադաթ. փող. № 5.
1907

Karishew, N.
Tntesagitakan zroytsner

№ 56 «ՅԱՌԱՋ»-Ի ԳՐԱԴԱՐԱՆ № 56

ՊՐՕՖ. Ն. ԿԱՐԻՇԵՒ

# ՏՆՏԵՍԱԳԻՏԱԿԱՆ

# ԶՐՈՅՑՆԵՐ

Գինն է 20 կոպ.



ԹԻՖԼԻՍ
Էլեկտրաշարժ տպարան «ՀԵՐՄԵՍ» Ս. Գ. Սդիզարեանցի.
Մադաթ. փող. № 5.
1907

կատանայ, իսկ փողով կը գնէ հաց, այսինքն նոյնպէս իրա համար հաց է արդիւնաբերում։ Ի՞նչ է անում վաճառականը՝ իր խանութում առեւտուր անելով։ Նա այդ անում է նրա համար, որ իր ապրանքի փոխարէն վերցնէ աւելի, քան ինքն է վճարել,— որպէսզի ստանայ օգուտ, որով հաց է գնում իրա համար, այսինքն՝ սա էլ դրանով իրա համար հաց է արդիւնաբերում։ Այստեղ ես միշտ ասում եմ, որ այդ եղանակներով ձեռք է բերում հաց։ Իհարկէ այդպէս ասում է միայն համառօտութեան համար։ «Հաց» ասելով այստեղ պէտք է հասկանալ ամեն բան, որ մարդուս անհրաժեշտ է կեանք վարելու համար. մէկ խօսքով՝ ապրուստ. Ուստի ես այստեղ ի նկատի ունիմ ոչ միայն ամեն տեսակ ուտելիք, այլեւ հագնելիքը, վառելիքը, մէկ խօսքով ամեն բան, առանց որի մարդս չի կարող կառավարուել։

2. ՈՐՈՇՈՒՄՆ։ Հիմա պարզ է, թէ ինչը պիտի կոչուի արդիւնաբերական գործունէութիւն։ Ամեն մի գործունէութիւն, որ նպատակ ունի «արդիւնաբերել», հայթայթել այն ամենը, ինչ որ մարդուս կեանքի համար հարկաւոր է, պէտք է կոչուի արդիւնաբերական։

**3. ԱՐԴԻՒՆԱԲԵՐԱԿԱՆ ԳՈՐԾՈՒՆԷՈՒԹԵԱՆ ԲՆԱԿԱՆ ԱՆՀՐԱԺԵՇՏՈՒԹԻՒՆԸ։** Մարդս քանի կենդանի է, ձգտում է իր օրգանիզմը պահպանել։ Եթէ նա չը պահպանէր նրան, վերջինս կը սկսէր քայքայուել։ Եթէ մարդս բոլորովին չուտէր, նա քաղցից կմեռնէր, այսինքն նրա օրգանիզմը բոլորովին կքայքայուէր։ Եթէ նա քիչ ուտէ, քան այդ պահանջում են բնութեան օրէնքները, նրա առողջութիւնը կվատանայ, յաճախակի կհիւանդանայ, ոյժերը կպակասեն, այսինքն օրգանիզմը կքայքայուի կամաց-կամաց։ Մարդս լիովին գիտակցում է այս ընդհանուր անխախտ կանոնը և մեծ ջանքով հոգս է տանում, որպէսզի ձեռք բերէ իր կեանքի համար անհրաժեշտ ամեն մի բան։ Այս հոգացողութիւնը միայն մարդուս յատուկ առանձնութիւն չէ։ Կենդանիները պակաս չգիտեն այդ։ Նրանցից իւրաքանչիւրն անգիտակցաբար ձգտում է իրան կշտացնելու և ցրտից պաշտպանելու։ Իհարկէ, մարդս նոյն բանն է անում, բայց նա անում է գիտակցաբար, մտածում է ամենալաւ եղանակները՝ ճանապարհները իր նպատակին հասնելու համար։ Նայեցէք ձեր շուրջը, թափանցէք ձեզ շրջապատող կեանքի իմաստը—կտեսնէք, որ առանց բացառութեան բոլոր մարդկանց յատուկ է այս բնական անդառնալի անհրաժեշտութիւնը, որ մարդկանց ահագին մեծամասնութիւնը—*համարեա բոլորը*՝ ապրում են *միայն* այդ հոգսով—մի կտոր հաց ճարելու հոգսով։

**4. ԿԱՐԻՔ։** Մարդուս *կարիքներն* այն բաներն են, որոնց անհրաժեշտութիւնը նա ըզ-

գում է է։ Կարիքները կարող են լինել զանազան։ Իւրաքանչիւրի համար կարիք է այն, ինչի որ նա սովոր է։ Որքան չունևոր է մարդս, այնքան քիչ կարիք ունի նա և ընդհակառակը։ Մինչև այժմ կրթուած ազգերի մէջ նկատուել են աւելի շատ կարիքներ, քան քիչ զարգացած ազգերի մէջ։ Ժամանակի ընթացքում կարիքների թիւն աւելացել է և աւելանում է։ Բայց որքան էլ որ զանազան է եղել նրանց քանակութիւնը՝ տարբեր մարդկանց համար և տարբեր ժամանակներում, այնուամենայնիւ—կայ մի սահման, որից աւելի պակասել նրանք չեն կարող առանց առողջութեանը վնասելու, առանց աշխատելու հնարաւորութիւնը նուազեցնելու։ Այն կարիքները, որոնք այդ սահմանից չեն անցնում, կոչւում են առաջնակարգ, անհրաժեշտ։

5. ԱՆՀՐԱԺԵՇՏ ԿԱՐԻՔՆԵՐ։ Մարդկային կեանքը երկարացնելու համար մարդուս օրգանիզմին անհրաժեշտ է սնունդ և տաքութիւն։ Թէ մէկի և թէ միւսի համար ծառայում է ուտելիքը, միայն երկրորդի համար հագուստը, բնակարանը և վառելիքը։ Հասկանալի է, որ յիշեալ առարկաները ներկայացնում են առաջնակարգ կարիքներ և կազմում են մարդուս ամենագլխաւոր հոգացողութեան առարկան*)։ Զանազան մարդկանց համար տար-

---

*) Բանւորական ընտանիքներն իրանց մնացած բոլոր կարիքների համար ծախսում են իրանց եկամուտի՝ միայն 4% Գերմանիայում, 7% Բելգիայում, 17% Ֆրանսիայում։

բեր տեղերում և զանազան ժամանակ պահանջ-
ւում է և ուտելիքի տարբեր քանակութիւն: Այս
կախուած է շատ պատճառներից: Վերջիններիս
թւին պատկանում է, օր., կլիման: Տաք եր-
կրներում բնական պայմանների համեմատ մարդս
ուտում է սակաւ, քան ցուրտ երկրներում: Հե-
տեւաբար հասարակաց գօտու տակ ուտելիք ձեռք
բերելու համար մարդուս հարկ կը լինի շատ քիչ
աշխատել, քան միւսների տակ, և որքան բեւեռ-
ներին մօտիկ—այնքան շատ: Յետոյ. դժուար չէ
հասկանալ, որ կլիման ունի շատ մեծ նշանա-
կութիւն նաև հագուստ, բնակարան և վառելիք
ճարելիս: Տաք երկրներում մարդիկ կարող են
ման գալ գրեթէ առանց հագուստի, կարող են
ապրել հասարակ խուղերում, կարող են կառա-
վարուել համարեա առանց վառելիքի: Տեղը որ-
քան մօտ է բեւեռին, այնքան անհրաժեշտ է այն-
տեղ տաք հագուստի մեծ քանակութիւն, այն-
քան կարևոր են տաք, ամուր և մեծ (մեծ ծա-
ւալով օդ տեղաւորելու համար) շէնքեր բնակու-
թեան համար, այնքան աւելի վառելիք է հար-
կաւոր տարեկան: Հասարակածի տակ վայրենին
ամբողջ տարին առանց հագուստի ապրում է
խուղի մէջ, բաց երկնքի տակ: Բևեռների մօտ էս-
կիմոսն ամբողջ տարին կոլոլւում է քուրքի մէջ
և տաքացնում է իր խուղը: Պարզ է, որ այն բո-
լոր աշխատանքը, որ բեւեռային և բարեխառն
գօտիների բնակիչները գործ են դնում այս կա-
րիքները լրացնելու համար, տաք երկրներում
«ազատւում է», այսինքն դառնում է աւելորդ:

Մի ուրիշ այսպիսի պատճառ է հասակը։ Չափահաս մարդը իր օրգանիզմը սննդելու համար աւելի շատ ուտելիք է պահանջում, քան երեխան կամ ծերը։ Հետևաբար մարդկանց այն խմբերը, որոնց մէջ չափահասները միւս հասակի մարդկանցից շատ են, ուտելիք ճարելու համար պէտք է աւելի աշխատեն, քան եթէ նրանք քիչ լինէին։

Այսպէս ուրեմն անհրաժեշտ կարիքների շատութիւնը որոշւում է այն բնական պայմաններով, որոնց մէջ ապրում են մարդիկ։

**6. ԱՐԴԻՒՆԱԲԵՐԱԿԱՆ ԳՈՐԾՈՒՆԷՈՒԹԻՒՆԸ ՈՐՊԷՍ ԿԱՐԻՔՆԵՐ ՀՈԳԱԼՈՒ ՄԻՋՈՑ։** Այժմ հասկանալի է, որ արդիւնաբերական կոչւում է հէնց այն գործունէութիւնը, որի նպատակն է մարդուս նիւթական կարիքները լրացնելը, այսինքն տեսակ-տեսակ առարկաների կարիքը հոգալու համար, և որ մարդկանց ահագին մեծամասնութեան համար այդ գործունէութիւնը կայանում է նրանում, որ բաւարարութիւն է տրւում բնութեան պահանջած միայն անհրաժեշտ կարիքներին։

**7. ՏՆՏԵՍԱԿԱՆ ԳՈՐԾՈՒՆԷՈՒԹԻՒՆ։** Արդիւնաբերական գործունէութիւնն ուրիշ կերպ կոչւում է տնտեսական և մենք նրան հէնց այդպէս էլ պիտի կոչենք։

**8. ՏՆՏԵՍԱԿԱՆ ԳՈՐԾՈՒՆԷՈՒԹԵԱՆ ԿԱԽՈՒՄԸ ԶԱՆԱԶԱՆ ՊԱՅՄԱՆՆԵՐԻՑ։** Բոլոր ա-

սածներից տեսնում էք, որ մարդուս տնտեսական գործունէութեան օրէնքները շարադասող գիտութիւնը շատ մեծ է և խիստ հետաքրքիր։ Նա ուսումնասիրում է այն ամբողջ աշխատանքը, որը բաւարարութիւն է տալիս բոլոր մարդկանց ամենաանհրաժեշտ ձգտումներին և որով համարեա միշտ զբաղուած են գրեթէ բոլոր մարդիկ։ Ով հետաքրքրւում է առօրեայ հացով, պէտք է հետաքրքրուի և ծանօթանայ նաև այն կանոններին ու օրէնքներին, որոնց հիման վրա ձեռք է բերւում այդ հացը։ Վերջիններս արտայայտւում են ի միջի այլոց և այն բանի մէջ, որ մարդկանց տնտեսական գործունէութիւնը որքան էլ բազմազան լինի, նա կախումն ունի շատ տեսակ-տեսակ պայմաններից, որոնցով նա կառավարւում է։ Նկատուած է, օրինակ, որ մարդկանց կարիքների շատութիւնը ի միջի այլոց կախուած է և՛ պարապմունքի տեսակից, և՛ աշխատանքի լարուածութիւնից։ Օր․, հոր փորողը կրկնակի շատ ուտելիք է գործածում, քան դերձակը միևնոյն բնական պայմանների մէջ։ Երբ հոր փորողը չի աշխատում, քիչ էլ ուտում է։ Աւելի մեծ նշանակութիւն ունին բնական պայմանների զանազանութիւնները։ Եթէ երկիրը հաց չտար, կամ մարդիկ չկարողանային ձեռք բերել, նրանք ամենայն հաւանականութեամբ չէին կարող իրանց կեանքը պահպանել երկրագնդի մեծագոյն մասի վրա։ Եթէ մարդիկ չգիտենային մշակել փայտն ու երկաթը, ոչ մէկը, ոչ միւսը մարդուն չէին բերել այն օգուտը, որ բերում են։ Եթէ չլինէր

փոխանակութիւնը, ամեն մէկը պիտի բաւականանար միայն նրանով, ինչ որ իր ձեռքի տակ ունէր, և չէր կարելի գործածել այն, ինչ որ ստացւում է կամ մշակւում է մեզանից հեռու։

9. **ԱՐԴԻՒՆԱԲԵՐՈՒԹԵԱՆ ԵՐԵՔ ՏԵՍԱԿՆԵՐԸ։** Այսպիսով տնտեսական գործունէութիւնը բաժանւում է երեք մասի, երեք տեսակ արդիւնաբերութեան.—1) Բնական, 2) արուեստագործական և 3) առևտրական։ Առաջնից ստացւում են բնական հարստութիւններ (հում նիւթ). Երկրագործութիւնից—հացահատիկ. անտառաբուծութիւնից—փայտ և շինութեան նիւթեր, որսից—թռչուն, երէ, ձկնորսութիւնից—ձուկ. հանքագործութիւնից—հանքեր։ Երկրորդը նրանց վերամշակում, արուեստագործում է, այսինքն նրանց տալիս է այն կերպարանքը, որով նրանք օգտակար են մարդուն։ Երրորդը տանում է նրանց եղած տեղից այնտեղ՝ ուր կարիք կայ։ Ամեն մի երկրում պէտք է լինեն այս բոլոր տեսակ արդիւնաբերութիւնները և առանց նրանց ժողովուրդն անկարող էր գոյութիւն ունենալ։

10. **ԱՐԴԻՒՆԱԲԵՐՈՒԹԵԱՆ ԶԱՆԱԶԱՆ ՏԵՍԱԿՆԵՐԻ ԾԱԳՄԱՆ ՊԱՅՄԱՆՆԵՐԸ։** Մենք ստորև կտեսնենք, որ բնական և ուրիշ պայմանները շատ զօրեղ ազդեցութիւն են անում այն բանի վրա, որ արդիւնաբերութեան իւրաքանչիւր տեսակը մի տեղ շատ է զարգանում, իսկ մի ուրիշ տեղ—քիչ. (Ցորեն չի կարելի ցանել հիւսիսում, որովհետև նա այնտեղ չի հասնում. փոխանակու-

թիւնը դիւրութեամբ կաւելանայ այնտեղ, որտեղ յարմար է տեղափոխել ապրանքներ, որտեղ, օր., կան երկաթուղիներ և այլն)։ Մարդս արդիւնաբերում է հէնց այն, ինչ որ իրան ամենից շատ հարկաւոր է և ինչ որ կարող է տալ նրան մեծ վաստակ, և ամեն բան կատարում է այնպէս, որ իր նպատակին հասնի ըստ կարելւոյն շուտ և հեշտութեամբ, ամենասակաւ աշխատանքը գործադրելով։ Այստեղից հասկանալի է, որ դրա համար նա օգտւում է բնութեան բոլոր ծառայութիւններից և գործադրում է իր ծանօթութիւնները այն մասին, թէ ինչպէս աւելի լաւ կարելի է այդ անել հետևապէս ինքը բնութիւնը և շրջապատող պայմանները ցոյց են տալիս նրան այն ճանապարհը, որով ամենից դիւրին կերպով կլրացուին նրա կարիքները։ Երկրագործն աշխատում է, որովհետև բնութիւնը նրան ձրի հաց չի տալ։ Մարդս մշակում է մետաղները, եթէ նա իր ձեռքի տակ հանք ունի։ Նա պարապում է ձկնորսութեամբ, եթէ ապրում է ծովին մօտ։ Եթէ հող ունի, տիրութիւն է անում։ Արհեստաւորը ձեռք է բերում սեփական արհեստանոց, եթէ միջոց ունի։ Նա ուրիշի մօտ է մտնում աշխատելու, եթէ ոչ արհեստանոց ունի և ոչ էլ միջոց։ Մէկ խօսքով՝ շրջապատող պայմանները որոշում են մարդուս տնտեսական գործունէութիւնը։ Այդ պայմաններին՝ ենթարկւում են միակերպ ամենքը, և դրա համար տնտեսական գործունէութիւնը պատահական չէ, կամայական չէ, այլ ենթարկուած է յայտնի կանոննե-

րի և օրէնքների, որոնք կարելի է ուսումնասիրել։

Հէնց այդ ուսումնասիրութեանն էլ կանցնենք մենք։

## ՁՐՈՅՑ ԵՐԿՐՈՐԴ

11. ԱՌԱՐԿԱՅԻ ԲԱԺԱՆՈՒՄԸ։ Վերևն իմացանք, որ մարդկանց տնտեսական գործունէութեան ուսումնասիրութիւնը խիստ հետաքրքիր է և լիովին հնարաւոր։ Նախ քան սկսելը, մեզ մնում է միայն ծանօթանալ այն բանին, թէ ինչ կարգով կատարւում է այդ ուսումնասիրութիւնը, ինչ մասերի է բաժանւում մեր առարկան։ Մենք գիտենք, որ մարդկանց տնտեսական գործունէութիւնը կայանում է այն ամենը ձեռք բերելու մէջ, որ լրացնում է նրանց կարիքները։ Կեանքի մէջ է կատարւում այս։ Իւրաքանչիւրը հեշտութեամբ կարող է պատասխանել այս հարցին, եթէ խորը մտածէ այն ամենի մասին, ինչ որ տեսնում է ամեն մի քայլափոխում։

12. ԱՐՏԱԴՐՈՒԹԻՒՆ։ Առաջ մարդս պէտք է ճարէ այն բոլորը, որ կարող է ծառայել այդ նպատակին, և ձեռք բերած իրերը պէտք է այնպիսի տեսքի վերածէ, որ նրանցով կարելի լինի օգտուել։ Պէտք է ձեռք բերել հացահատիկ, փայտ կտրել, հանել երկաթի հանք։ Սակայն ոչ հացահատիկը, ոչ անտաշ փայտը, ոչ հանքը առանց մշակութեան պիտանի չեն մարդուս գործածութեան համար։ Հացահատիկը պէտք է աղալ,

ալիւր դարձնել, փայտն ու հանքը՝ մշակել, այսինքն նրանցից կեանքի մէջ անհրաժեշտ իրեր շինել։ Հումնիւթ ստանալը և սրա մշակումը կոչւում են **ա ր տ ա դ ր ո ւ թ ի ւ ն**, որ մարդուս տնտեսական գործունէութեան առաջին մասն է և նրա հիմքը։ Քանի արդիւնքը արտադրած չէ, պարզ է, չէ կարելի յիշեալ կարիքներին բաւարարութիւն տալ։ Յետոյ, ամբողջ տնտեսական գործունէութիւնը միայն այդ մասով չէ կարող սահմանափակուել։ Եթէ աշխարհումս բոլոր առարկաները ձեռք բերէին ամենքն իրանց համար, միայն այն ժամանակ կարելի էր ասել, թէ **ա ր տ ա դ ր ո ւ թ ե ա ն** ուսումնասիրութիւնը բաւական էր այդպիսի գործունէութեանը ծանօթանալու համար։

13. ԲԱՇԽՈՒՄՆ։ Սակայն ամեն քայլափոխում դուք կարող էք տեսնել, որ, օր. մշակն աշխատում է ոչ իր՝ այլ տիրոջ համար, որ ով հող ունի, ինքը տնտեսութեամբ չի պարապում, այլ վարձով է տալիս հողը. որ մէկը միւսին փող է փոխ տալիս—և այս երկրորդն արդէն այդ փողով հիմնում է իր տնտեսութիւնը, իր արհեստանոցը, նրանից եկամուտ է ստանում և սրանից փողի տիրոջը տոկոս է վճարում։ Այսպիսով այս բոլոր դէպքերում դուք տեսնում էք որ իւրաքանչիւր առարկայի արտադրութեանը, շատ յաճախ մասնակցում են մի քանի մարդիկ. նրանցից իւրաքանչիւրը մասնակցում է, ի հարկէ, նրա համար, որ դրանից ստանայ իր օգուտը։ Սակաւ է պատահում, որ մի մարդ բոլոր արդիւնքներն (про-

дукты) ինքն արտադրէ իրա համար։ Եթէ գիւղացին հող ունի, նա այնու ամենայնիւ շատ յաճախ վարձով վերցնում է դրսից էլ քիչ հող, եթէ հնարաւորութիւն ունի դրա համար։ Հարուստը մշակներ է պահում։ Վարպետը, եթէ ինքն ուրիշի մօտ չի ծառայում, համարեա միշտ նոյնպէս մշակներ է պահում։ Նշանակում է, որ արտադրուած առարկաները, սակաւ ծառայում են միայն մի մարդու։ Երկրագործը իր հացը ծախելով՝ վարպետն իր ձեռքի աշխատանքը ծախելով՝ պէտք է վճարէ կամ բանւորին ռոճիկ, կամ վարձած հողին կապալագին, կամ փոխ առած փողին տոկոս։ Պարզ է, որ արտադրած առարկաները բ ա շ խ ւ ո ւ մ՝ բաժանւում են նրանց միջև, որոնք մասնակցել են արտադրութեանը։ Ի հարկէ այս դէպքում միևնոյն է՝ բաժանւում է ինքն առարկան, թէ այն փողերը, որոնք ստացուած են կամ մինչև իսկ դեռ պիտի ստացուին վաճառելուց յետոյ։ Տնտեսական գործունէութեան այս մասի ուսումնասիրութիւնը կազմում է մեր առարկայի երկրորդ բաժինը և կոչւում է բ ա շ խ ո ւ մ ն։ Սակայն սրանով էլ չի վերջանում մարդկանց տնտեսական գործունէութիւնը։

**14. ՓՈԽԱՆԱԿՈՒԹԻՒՆ ԿԱՄ ԱՌԵՒՏՈՒՐ։** Արդէն ասել եմ, որ եթէ մարդս ամեն տեղ կարողանար գտնել ամեն բան, ինչ որ իրան հարկաւոր է, այն ժամանակ փոխանակութիւն չէր լինիլ։ Փոխանակութիւնը հէնց այն պատճառով գոյութիւն ունի, որ իւրաքանչիւր տեղ չի արտադրում շատ այնպիսի բաներ, որոնք մարդուս

անհաժեշտ են։ Մի նահանգ արտադրում է, օր․, աւելի շատ ցորեն, աւելի քան հարկաւոր է իր բնակիչներին։ Այդ ցորենը գիւղացիք վաճառում են առեւտրականներին, սրանք էլ ուղարկում են այնտեղ, որտեղ ցորեն քիչ կայ։ Ստացած փողով գիւղացին գնում է իր համար այն, ինչ որ անհրաժեշտ է։ Ի միջի այլոց նա գնում է այն գիւղատնտեսական գործիքները, առանց որոնց չի կարող կառավարուիլ, և որոնց պատրաստում է արհեստաւորը։ Վերջինս իր ձեռքի աշխատանքից ստացած փողով գնում է, օր․, փայտ։ Եթէ տեղում անտառ չկայ, այն ժամանակ փայտը բերւում է այնտեղից, ուր անտառ շատ կայ, ուր փայտը ծախում են, որպէս զի հաց գնեն, որն այնտեղ սակաւ է։ Նա գնում է իրա համար երկաթ, որ բերւում է, օր․, Ուրալեան սարերից, որտեղ շատ հանք կայ, որտեղ ձեռք է բերւում և մշակւում է այդ հանքը։ Փայտն էլ, երկաթն էլ արհեստաւորին ծառայում են նրա համար, որպէսզի նրանցից գործիքներ արտադրէ, նորից վաճառէ և առանց օգուտի իր օրական պարէնն հայթայթէ և այլն։ Դժուար չէ հասկանալ, որ ինչպէս առանձին մարդ, այնպէս էլ իւրաքանչիւր առանձին տեղի ժողովուրդ իրար վաճառում են այն, ինչ որ իրանք արտադրում են, որպէսզի ուրիշներից գնեն այն, ինչ իրանք չեն արտադրում, և ինչ որ իրանց հարկաւոր է։ Այսպէս ուրեմն բոլոր մարդիկ փոխանակում են իրար հետ իրանց ձեռքի աշխատանքը։ Մեր առարկայի այն բաժանմունքը, որ զբաղւում է տնտեսական գործունէ-

ութեան այս մասի ուսումնասիրութեամբ, կոչւում է փոխանակութիւն կամ առևտուր։

Սրանք են այն երեք բաժինները, որոնց պէտք է հետևեն մեր զրոյցները։ Առաջ պէտք է քննենք արտադրութիւնը, յետոյ բաշխումն և վերջապէս փոխանակութիւնը։

## ԶՐՈՅՑ ԵՐՐՈՐԴ

### Ա. Արտադրութիւն

**15. ԱՐՏԱԴՐՈՒԹԵԱՆ ԵՐԵՔ ՊԱՅՄԱՆՆԵՐԸ։** Ի՞նչ է հարկաւոր որևէ առարկայ արտադրելու համար։ Ուշք դարձրէք, օրինակի համար, լուսամուտի վրա։ Ի՞նչ պէտք է ունենար արտադրողը, ի՞նչ պէտք է անէր, որ պատրաստէր այդ առարկան։ Ամենից առաջ նրան անհրաժեշտ էր նիւթը (մատերիալ)—փայտը, ապակին, ծղխնին (պետլի), մեխերը, սօսինձը։ Լուսամուտը չէր պատրաստուի, եթէ վարպետը չունենար այս բոլորը, այս բոլոր նիւթը (մատերիալը), որ նա առաւ բնութիւնից։ Բայց բնութիւնը նրան տուեց ոչ միայն այս։ Եթէ շփման ոյժը չլինէր, տախտակները չէին գամուի, «փակը» չէր ամրանայ։ Եթէ ջերմութեան ոյժը չլինէր, չէր կարելի երկաթը կռանել։ Այսպէս ուրեմն արտադրողին ամենից առաջ օգնեց բնութիւնը։ Նա նրան տուեց նիւթ և ոյժ։ Ոչ մի արտադրութիւն չի իրագործուի առանց բնութեան այդ բարիքների։ Յետոյ. բոլորովին պարզ է, որ այս բոլոր նիւթը չէր կարող լուսամուտ դառնալ ա-

ռանց արտադրողի աշխատանքին։ Մարդու
աշխատանքով տաշւում, յարմարւում են
տախտակները, պատրաստւում և գամւում են
մեխերը, դրւում է ապակին և այլն։ Վերջապէս
արտադրողը չի կարող նիւթից լուսամուտ շինել
դատարկ ձեռքերով։ Նրան հարկաւոր է կացին,
սղոց, ատաղձագործական գործիք, ալմաստ. Նը-
րան անհրաժեշտ է շինութիւն արհեստանոցի հա-
մար։ Մի խօսքով լուսամուտ շինելու համար նը-
րան հարկաւոր է, որ առաջուց որոշ չափով աշ-
խատանք գործադրուի գործիքների, մեքենաների
և շինութեան վրա և այլն։ Առաջուայ աշ-
խատանքի այդ պտուղը կոչւում է
դրամագլուխ—կապիտալ։

Այսպէս ուրեմն արտադրելու համար
անհրաժեշտ են բնութեան բարիքները,
աշխատանք և դրամագլուխ։ Բացի այս
մենք գիտենք, որ բնութիւնն ազդում է մարդ-
կանց տնտեսական գործունէութեան վրա ոչ
միայն նրանով, որ տալիս է նիւթեր և ոյժեր,
այլ նաև ուրիշ կերպ (յիշենք կլիմայի ազդե-
ցութիւնը)։ Ուրեմն ծանօթանանք նախ և առաջ
բնութեան ազդեցութեան հետ արտադրութեան
վրա, յետոյ—աշխատանքի և, վերջապէս,
դրամագլխի։

## 1. Բնութիւն.

**16. ԲՆՈՒԹԵԱՆ ԲԱՐԻՔՆԵՐԻՑ ՕԳՏՈՒԵ-
ԼՈՒ ԵՂԱՆԱԿԸ։** Ինչպէս արդէն ասացինք, ա-
ռանց բնութեան բարիքների մարդ չի կարող

զարգացնել իր արդիւնաբերական գործունէութիւնը։ Նոր ասացի, որ նա տալիս է մարդուն նիւթ և ոյժեր, որոնցով նա օգտւում է։ Մարդը, հետևաբար, հնազանդեցնում է իրան այդ ոյժերն ու նիւթերը՝ իր նպատակներին հասնելու համար։ Ի՞նչպէս է այդ անում։ Ի՞նչ ճանապարհով մարդը կարող է իրան հնազանդեցնել բնութիւնը։—Առաջ կարծում էին, թէ մարդ կերտում, ստեղծում է նոր նիւթ, որ մինչև նրա աշխատանքը գոյութիւն չունէր։ Առաջ ասում էին, որ եթէ երկրագործը գետին ձգեց մի հատիկ, իսկ հնձելիս նրա փոխարէն հինգն ստացաւ, իր աշխատութեամբ նա ստեղծեց չորս նոր հատիկներ։ Տեսնենք՝ ուղի՞ղ է այս։ Սերմը ցանելուց առաջ՝ երկրագործը վարում է հողը։ Ինչո՞ւ։ Որովհետև նա գիտէ, որ հատիկը ծիլ կտայ միայն այն ժամանակ, երբ նա կ՚ենթարկուի հողի ջերմութեանը և խոնաւութեանը։ Հողը պէտք է փափկացնել, յետոյ սերմ ձգել և ապա հողով ծածկել (տափանել)—միայն այն ժամանակ նա կըսկսի աճել։ Ուրիշ խօսքով—մարդ իմացաւ, բնութեան օրէնքներով՝ ինչ պայմանների մէջ սերմը կարող է զարգանալ։ Նա տալիս է այդ պայմանները, իսկ բնութիւնն ինքը զարգացնում է հատիկը։ Ցօղունն աճում է ոչ մարդու կամքով, այլ բնութեան անփոփոխ օրէնքներով։ Մարդը կարողացաւ միայն գործադրել այդ օրէնքները իր նպատակի՝ հաց ստանալու համար։ Յետոյ բերքը ժողովելով՝ նա հացահատիկը տանում է ջրաղաց։ Այնտեղ նա

Նրան տեղաւորում է երկու ծանր քարերի միջև, որովհետև նա գիտէ, որ նրանցից մէկի պտոյտ գալովը միւսի վրա՝ հատիկը ծանրութեան ոյժից կըփշրուի։ Մարդը գիտէ, որ հատիկն ուտելու համար պիտանի է միայն այսպէս փշրուելուց յետոյ։

Նա գիտէ, որ առանց հացի ինքը չի կարող ապրել։ Այս բոլոր գործողութիւնների մէջ մարդը միայ օգտւում է արդէն պատրաստի՝ ոչ իր ստեղծած՝ բնութեան ոյժերից, նա հակադրում է նրանցից մէկը միւսին և դրանով ստիպում է իր համար աշխատել։ Յետոյ հողի մասնիկները պինդ զուգորդուած են իրար հետ։

Նա գիտէ, որ այդ զուգորդութեան չի կարելի յաղթել բութ գործիքով (օր., երկաթեայ ձողով), նա գործ է ածում սուրը (խոփի ձևինը)։ Լծկան տաւարի կամ շոգիի (կան և շոգեշարժ գութաններ) ոյժով նա յաղթում է հողի մասնիկների և գութանի շփման ոյժին։ Երկանի ճնշման ուժով նա ընկճում է հատիկի մասնիկների դիմադրութեան ոյժը—դարձնում է նրան փոշի, որ կոչվում է ալիւր։

Նա գիտէ, որ երկրի ձգողական ոյժի պատճառով գետի ջուրն հոսում է ցած՝ հունի թեքութեան վրայով, որ վերև հոսել նա չի կարող։ Նա փակում է նրա ճանապարհը, գետի լայնքին պատնէշ է քաշում և ջուրը բաց է թողնում միայն մի փոքր անցքի (բանդ) միջով, որի ծայրին դնում է ջրաղացի անիւը։ Դրանից ջրի անկման ոյժն այն աստիճան աւելանում է, որ

սկսում է շարժել անիւը։ Մեխը պատին զամելիս մարդը գիտէ, որ նա կարող է պահել որոշ ծանրութիւն՝ եթէ կախեն որևէ բան, շնորհիւ պատի մասնիկների և մեխի շփման ոյժին։ Ցանկանալով փայտ ստանալ իր փոքրիկ պէտքերի համար՝ մարդը խախտում է ծառի մասնիկների զուգորդութեան ոյժը սուր գործիքով (կացինով) և դրանով հարկադրում է վար ընկնել երկրի ձգողական ոյժի պատճառով։

Տեսնում էք, որ բոլոր այս դէպքերում մարդը չի ստեղծում ոչ նիւթ, ոչ ոյժ։ Ծառն էլ, հատիկն էլ, գետն էլ, երկաթն էլ, ձգողական ոյժն էլ, շփումն էլ, մասնիկների զուգորդութիւնն էլ, տաքութիւնն էլ, խոնաւութիւնն էլ—այս բոլորը բնութեան մէջ գոյութիւն ունեցել է մարդոց առաջ, գոյութիւն ունի և պէտք է գոյութիւն ունենայ, քանի կայ այն աշխարհը, որի մէջ մենք ապրում ենք։ Մարդը ոչ մի այդպիսի բան չէ ստեղծել, ոչինչ էլ ստեղծել չի կարող։

Բնութեան ոյժերի շնորհիւ հասկը բուսաւ և հասաւ, աղացուեց և դարձաւ հաց։ Բնութեան ոյժերի շնորհիւ եզներն ու ձիերը՝ իրանց յետեւից գութանը քարշ տալով, երկրագործի համար հող են պատրաստում։ Բնութեան ոյժերի շնորհիւ ջրաղացը գործում է, մեխը պահում է ծանրութիւնները, ծառը կարելի է կտրել։

Իսկ ի՞նչ է անում մարդը։ Նա նախ և առաջ ուսումնասիրում է բնութիւնը։ Նա գիտութեան և փորձի միջոցով գտնում է, թէ ինչպէս ամենից հեշտ կերպով—ամենասակաւ ժա-

մանակ, ոյժ և աշխատանք գործադրելով—իր օգտին ծառայեցնի բնութեան նիւթերն ու ոյժերը, ինչպէս նրանցից մէկը միւսին հակադրէ, որպէսզի ստանայ այն գործողութիւնը, այն առարկան, որ նրան հարկաւոր է։ Եւ մարդ միմիայն այս կարող է անել իր արդիւնաբերական գործունէութեան մէջ և ուրիշ ոչինչ։ Մարդ որքան շատ գիտէ, որքան զարգացած է, այնքան էլ արդասաւոր է նրա աշխատանքը, այնքան հեշտութեամբ նա հնազանդեցնում է իրան բնութեան ոյժերը։

## ԶՐՈՅՑ ՉՈՐՐՈՐԴ

### 2. Աշխատանք.

17. **ԱՇԽԱՏԱՆՔԻ ՆՇԱՆԱԿՈՒԹԻՒՆԸ ՄԱՐԴԿԱՆՑ ԱՐԴԻՒՆԱԲԵՐԱԿԱՆ ԳՈՐԾՈՒՆԷՈՒԹԵԱՆ ՄԷՋ։** Այսպէս ուրեմն բնութիւնը տալիս է մարդուն նիւթ և ոյժեր։ Նրանցից մարդը պէտք է ձեռք բերէ ամեն բան, ինչ որ նրան հարկաւոր է իր գոյութիւնը պահպանելու համար։ Ինչով կարելի է հասնել այդ բանին։

—Աշխատանքով։

Քամին անպէտք է մարդու համար, մինչև որ վերջինս աշխատանք գործ չդնի հողմաղաց սարքելու համար. շոգիի ոյժը նոյնպէս անպէտք է—մինչև շոգեշարժ (լոկոմոտիւ) շինելը. երկաթի հանքը—մինչև որ դարբինը կամ փականագործը մշակէ և յղկէ նրան. փայտը—մինչև որ

ատաղձագործը կամ կահագործը նրա վրա գործադրեն իրանց աշխատանքը։ Բնութեան մատակարարած համարեա ամեն բան չի բերում մարդուն այն օգուտը, որ կարող է բերել, եթէ գործ չըդրուի որոշ քանակութեամբ աշխատանք։ Մինչև անգամ գետի մակերևոյթի վրա լողացող ձուկը դառնում է օգտակար՝ նրան որսալու և պատրաստելու համար գործ դրած աշխատանքից յետոյ։ Հասարակածի տակ՝ փարթամ բնութեան գրկում իսկ մարդը կըմեռնի քաղցից և ծարաւից, եթէ բոլորովին աշխատել չուզենայ։ Հետևաբար աշխատանքը տալիս է մարդուն այն օգտակարութիւնները, որ արտադրում է բնութիւնը։

Գրեթէ ամեն մի առարկայ դառնում է օգտակար միայն այն բանից յետոյ, երբ ով և իցէ մէկը աշխատում է շինել կամ գոնէ նրան յարմարեցնել մարդու կարիքներին։

Ճշմարիտ է, ոչ ոք չէ աշխատել արևի լոյսի արտադրութեան վրա։ Սա այն սակաւաթիւ բարիքներից մէկն է, որոնք ձրի տրւում են անխտիր բոլոր մարդկանց։ Սակայն մինչև անգամ նրանից էլ բոլոր հնարաւոր օգուտը կարելի է ստանալ միայն աշխատութեամբ։ Օր., որպէսզի նա օգտակար լինի հացահատիկները բուսցնելու գործում, առաջ հարկաւոր է աշխատանք գործ դնել վարուցանքի վրա։

Ոչ ոք չէ աշխատել, որ գետում ջուր լինի։ Սակայն ջրից նրա բոլոր օգուտներն ստանալու համար, պէտք է, օր., նախ աշխատանք գործ

գնել՝ Ջրաղաց շինելու վրա՝ հացն աղալու համար, պէտք է շոգենաւ շինել՝ մարդիկ և ապրանք տեղափոխելու համար, պէտք է ձկնորսական գործիքներ պատրաստել՝ ձուկ որսալու համար և այլն։ Զարգացած մարդը գիտակցում է աշխատանքի այս ամենամեծ կարեւորութիւնը մարդկանց համար և խոնարհւում է նրա առաջ։

**18. ՏՆՏԵՍԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔ.** ա) Նպատակաւոր աշխատանք. Ամեն աշխատանք չի ծառայում մարդու արդիւնաբերական գործունէութեանը։ Շատ յաճախ կարելի է աշխատել այնպէս, որ աշխատանքի հետեւանքը չի լինի ոչ մի առարկայ, որ կազմում է մարդու արդիւնաբերական գործունէութեան նպատակը։ Տեսէք, օր., այն մարդը, որ զբօսնելու է գընում առանց նպատակի, առանց ծրագրի։ Ի հարկէ նա աշխատում է։ Նա լարում է իր մկանները, կարող է խիստ յոգնել, եթէ զբօսանքը երկար տեւէ։ Սակայն մի՞թէ նա աշխատում է արդիւնաբերական նպատակով։ Ի հարկէ, ո՛չ։

**19. ՆԻՒԹԱԿԱՆ ՊԻՏՈՅՔՆԵՐԻՆ ԲԱՒԱՐԱՐՈՒԹԻՒՆ ՏԱԼԸ։** Նայեցէք այն տղային, որ գընդակ է խաղում։ Մի՞թէ չի աշխատում։ Ի հարկէ աշխատում է—և այդ աշխատանքը շատ օգտակար է նրա առողջութեանը։

Եթէ դուք մարմնամարզական վարժութիւններ էք անում—այդ շատ օգնում է ձեր օրգանիզմի զարգացմանը։ Բայց ձեր այդ աշխատանքն ու տղայի աշխատանքը որևէ բանով

տարբերւում են այն աշխատանքից, որ արհեստաւորը գործ է դնում իր արհեստանոցում. Ի հարկէ խիստ տարբերւում է։ Այստեղ աշխատանքի արդիւնքը լինում է մի իր, որ մարդուն պիտանի է, որը կարելի է ծախել և ստացած փողով գնել հաց, հագուստ—ամեն բան, որ կեանքի պահանջ է. այնտեղ ոչ մի այդպիսի իր չի ստացւում; և եթէ մարդիկ կեանքի մէջ միայն մարմնամարզութեամբ պարապէին, չէին ստանալ մի բան, որ հարկաւոր է իրանց գոյութիւնը շարունակելու համար։ Նրանք չէին գիտենայ ա ր դ ի ւ ն ա բ ե ր ա կ ա ն գործունէութիւն։ Վերջապէս կայ էլի աշխատանք, որ վերաբերում է այդ գործունէութեանը։ Այդ է մ տ ա ւ ո ր, հ ո գ ե կ ա ն աշխատութիւնը։

գ. ՆԻՒԹԱԿԱՆՈՒԹԻՒՆ (Матеріальность).

Եթէ դուք արհեստանոցում պատրաստէք դութան կամ մեքենայ, դուք պատրաստած կլինիք մի նոր բան, որ մարդուն ծառայում է նոր աշխատանքի համար։ Եթէ դուք նորոգէք հին ցաքանը, դուք գործածութեան համար անպէտք իրը դարձնում էք պիտանի։ Եթէ դուք շինէք մինչև իսկ անպէտք կամ առհասարակ ոչ կարևոր մի իր—որևէ խաղալիք—կըգտնուի մի մարդ, որ կըգնի նրան իր երեխաների զւարճութեան համար։ Դուք շինեցիք մի առարկայ, որին նա տալիս է մի յայտնի գործածութիւն։ Մի խօսքով միշտ ձեր աշխատանքի արդիւնքը լինում է որևէ իր, որ օգտակար կամ հաճելի է մարդուն։ Եւ այսպէս է լինում ամեն մի աշխատանքի հե-

տեանքն այնտեղ, ուր մարդը երևան է հանում իր արդիւնաբերական գործունէութիւնը։ Երկրագործն էլ հասցնում է մարդկանց երկրի նորանոր պտուղները, ոստայնագործն էլ տալիս է նրանց մահուդի նորանոր կտորներ, առևտրականն էլ տեղափոխում է նրանց այնտեղ, որտեղ չկայ— հետևաբար այնտեղ շատացնում է մարդկանց հարկաւոր իրերի քանակութիւնը։ Բայց այդպէս չէ մարդու մտաւոր գործունէութեան մէջ։ Օր., ուսուցիչը, որ սովորեցնում է մանուկներին, բժիշկը, որ բժշկում է հիւանդներին, մարդուն ոչ մի նոր իր չեն տալիս։

Ուսուցիչը մանուկներին սովորեցնում է, որպէսզի նրանք ձեռք բերեն շատ ծանօթութիւններ։ Բժիշկը բժշկում է, որ հիւանդները առողջ լինին։ Իսկ ինչու համար է աշխատում երկրագործը, վարպետը, ոստայնագործը։ Նրա համար, որ ձեռք բերեն մի կտոր հաց։ Ուսուցիչը, բժիշկը ռոճիկ են ստանում նրա համար, որ նրանք ապահովուած լինին անհրաժեշտ բաներով և կարիք չունենան արդիւնաբերական գործունէութեան։ Եթէ նրանք վարձատրութիւն չստանային իրանց աշխատութեան համար, պէտք է պարապէին երկրագործութեամբ կամ արհեստով և այլն, և ժամանակ չէին ունենալ սովորեցնելու և բժշկելու։ Նրանց նշանակում են այդ պաշտօններին ոչ թէ նրա համար, որ ռոճիկ տան, այլ նրա համար, որ նրանք սովորեցնեն, բժշկեն և ուրիշ ոչ մի բանով չըպարապեն։ Երկրագործը, վարպետը, ոստայնա-

գործը իրանց գործունէութեան մէջ ապրուստից զատ ուրիշ նպատակ չունին։

Վարպետը գութանը պատրաստում է ոչ թէ նրա համար, որ դրանով ուրիշներին օգուտ բերէ, այլ նրա համար, որ գութանը վաճառելով՝ ինքն օգուտ ստանայ։

—«Միայն հացով չի ապրի մարդ» (Աւետարան)։ Մարդկանց համար ուսուցիչ ու բժիշկ ունենալը նոյնչափ անհրաժեշտ է, որչափ մի կտոր հացը։ Մարդկային հասարակութիւնը չի կարող ապրել, եթէ չլինի մէկը, որ սովորեցնէ, որ բժշկէ։ Գիտութիւնը սովորեցնում է մարդկանց աւելի լաւ, աւելի արգասաւոր կերպով աշխատել. առողջութեան պահպանութիւնը նպաստում է այն բանին, որ աշխատելու համար շատ ժամանակ մնայ։ Բայց այդ մարդկանց ամբողջ աշխատանքը չի մտնում այն գիտութեան մէջ, որ զբաղւում է միայն արդիւնաբերական գործունէութիւնն ուսումնասիրելով։ Մեր գրոյցների մէջ մենք կըշօշափենք միայն այդ և կըխօսենք միայն այն աշխատանքի մասին, որ ծառայում է միայն արդիւնաբերական գործունէութեան։

21. ՏՆՏԵՍԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՈՐՈՇՈՒՄԸ։ Ուրեմն ի՞նչ է այդ աշխատանքը։ Առաջին —նա պիտի կատարուի որոշ ծրագրով, պէտք է հասցնէ որոշ նպատակի, որ դրել է գործաւորը։ Դրա համար նա կոչւում է նպատակաւոր աշխատանք (նպատակի՝ ծրագրի համապատասխան)։ Թեղելու (էրնելու) մեքենայ պատրաստե-

լիս վարպետը գիտէ, որ շինում է թեղելու մեքենայ, և ոչ թէ ուրիշ որևէ բան։ Երկրորդ— նրա նպատակը պիտի լինի անպատճառ մի իր, որ բաւարարութիւն տայ մարդու որևէ պիտոյքին։ Որևէ կարիք որքան աւելի մօտենայ առաջնակարգ կարիքներին, այնքան էլ, ի հարկէ նրա իրագործմանն ուղղած աշխատանքը կարևոր է դառնում։ Վերջապէս, երրորդ—այդ աշխատանքը չը պիտի լինի ոչ մտաւոր, ոչ հոգեկան, այլ ֆիզիքական, որ տալիս է իբրև արդիւնք որևէ օգտակար կամ հաճելի իր։ Ապա թէ ոչ այդ աշխատանքը կոչւում է մկանային։ (Ահա աշխատանքի այն երեք յատկութիւնները, որոնցով մենք կիմանանք, բաւարարութիւն տալի՞ս է նա արդեօք մարդկանց արդիւնաբերական գործունէութեան։ Այն աշխատանքը, որ այս յատկութիւնն ունի, կոչւում է տնտեսական։ Ուրեմն ի՞նչն է կոչւում տնտեսական աշխատանք։ Դա ֆիզիքական նպատակաւոր աշխատանքն է, որ բաւարարութիւն է տալիս մարդկանց նիւթական կարիքներին։

## ԶՐՈՅՑ ՀԻՆԳԵՐՈՐԴ

**22. ԱՇԽԱՏԱՆՔԻ ԳՈՒՄԱՐՆ ՈՒ ԱՐԴԻՒՆԱՒԷՏՈՒԹԻՒՆԸ։** Բոլոր մարդիկ միակերպ չեն աշխատում։ Մի քանիսներն աշխատում են շատ, միւսները—քիչ։ Ոմանք կարողանում են անել աւելի, քան միւսները միևնոյն ժամանակի ըն-

ացքում։ Երեխան, փոքրը չեն կարող այնքան գործ անել, որքան կարող է չափահասը. յաճախ տօնել սիրողը չի կարող այնքան գործ տեսնել, որքան աշխատասէրը. մեքենան բանեցնել չգիտցողը չի կարող այնքան գործ առաջ տանել, որքան գիտցողը։ Վայրենին երբեմն աւելի կուշտ է լինում միայն նրանով, որ ձուկ է բռնում, և այդ քիչ ժամանակ է խլում նրանից, իսկ բանւորն յաճախ ստիպուած է աշխատել օրական 15—18 ժամ, որ մի կտոր հաց վաստակէ։ Այսպէս ուրեմն մէկն աշխատում է շատ, միւսը՝ քիչ. ուրիշ խօսքով մէկի աշխատանքի գումարն աւելի է, միւսինը—պակաս։—Ցեռոյ. վայրենի որսորդը գործ է ածում ոչ պակաս քան մի օր նրա համար, որ մի թռչուն սպանի, որով կերակրւում է, իսկ միևնոյն ժամանակում բանւորը գնդասեղների գործարանում պատրաստում է հազարաւոր գնդասեղներ և այլն։ Ուրիշ խօսքով մէկն աշխատում է յաջողակ, արդիւնաւոր կերպով, կարողանում է շինել աւելի շատ բան, աշխատում է, ինչպէս ասում են, արդիւնաւէտ կերպով, քան ուրիշը։ Հետևաբար աշխատանքի գումարն ու արդիւնաւէտութիւնը կարող է շատ խիստ փոփոխուել հասարակութեան մէջ։— Տեսնենք այդ ինչ պայմաններից է կախուած։— Սկսենք ամենագլխաւոր պայմաններից, որոնք շատացնում կամ քչացնում են մարդկանց աշխատանքի գումարը։

## 23. ԱՇԽԱՏԱՆՔԻ ԳՈՒՄԱՐԻ ՓՈՓՈԽՈՒԵԼՈՒ ՊԱՅՄԱՆԸ. ա. ԺՈՂՈՎՐԴԻ ԲԱԺԱՆՈՒՄԸ

ԸՍՏ ՀԱՍԱԿԻ։ Այդ պայմանների մէջ ամենից առաջ մտնում է մարդկանց բաժանումը ըստ հասակի։ Մարդս ամենից աւելի ընդունակ է աշխատանքի, ամենից աւելի ամրակազմ, ուժեղ է լինում 25—45 տարեկան հասակում։ 15—25 տարեկան հասակը ոյժերն աւելանում են, բայց դեռ լիովին զարգացած չեն լինում։ 45—60 տարեկան հասակում ոյժերը պակասում են, թէպէտ և դեռ չի գալիս զառամեալ հասակը։ Մինչև 15-ը և 60 տարեկանից յետոյ մարդը համարւում է մշտական աշխատանքի անընդունակ։ Պարզ բան է, որ այն հասարակութիւնը, որի մէջ 25—45 տարեկան մարդիկ կան՝ ենթադրենք $40^{0}/_{0}$, կարող է տալ աշխատանքի աւելի մեծ գումար, քան այն, որի մէջ կայ $30^{0}/_{0}$, կամ $20^{0}/_{0}$։ Հասարակութեան մէջ որքան քիչ են երեխաները, պատանիները և ծերերը չափահասների հետ համեմատելով, այնքան նա աւելի կարող է աշխատել, այնքան նրա կազմը տ ն տ ե ս ա պ է ս շ ա հ ա ւ է տ է։

24. բ. ԸՍՏ ՍԵՌԻ։ Երկրորդ պայմանն է մարդկանց բաժանումն ըստ սեռի։ Կինն առհասարակ թոյլ է տղամարդուց և ընդհանրապէս նրանից քիչ գործ կարող է անել։ Հասարակութեան այնպիսի կազմութիւնը, որի մէջ 100 տղամարդուն ընկնում է, օր., 106 կին, ձ ե ռ ն տ ո ւ չէ այն կազմութիւնից, որի մէջ 100 տղամարդուն ընկնում է, օր., 98 կին։

25. գ. ՕՐԳԱՆԻԶՄԻ ՄԻՋԻՆ ՊԻՏԱՆԻՈՒԹԻՒՆԸ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՀԱՄԱՐ։ Երրորդ պայմանն

է օրգանիզմի պիտանիութիւնը աշխատանքի համար։ Զանազան մարդկանց օրգանիզմները աշխատանքի տարբեր ընդունակութիւն ունին։ Մէկը չի կարող կատարել միւսի կէսի չափ։ Այդպիսի զանազանութիւն լինում է ոչ միայն առանձին մարդկանց մէջ, այլ և ազգերի մէջ։ Օր., նկատուած է, որ զարգացած ազգերը, Եւրոպացիք, աշխատանքի աւելի ընդունակ են, քան Աւստրալիացի վայրենիները։ Անգլիացի բանւորը ֆրանսիացուց ուժեղ է, յոյնը թուրքից ուժեղ է։ Մարդու մտաւոր զարգացումը աւելացնում է սէր դէպի աշխատանքը, իսկ աշխատելու սովորութիւնը զարգացնում է մարդու ոյժերը և ժառանգաբար ծնողներից անցնում է որդոցը։ Որքան մարդիկ զարգացած են, այնքան նրանք յարգում են աշխատանքը, այնքան աւելանում է նրանց օրգանիզմի պիտանիութիւնն աշխատանքի համար, այնքան, հետևաբար, ձեռընտու է տնտեսապէս այդպիսի հասարակութեան կազմութիւնը։

26. դ. ՀԻՒԱՆԴՈՒԹԻՒՆ։ Հասարակութեան մէջ աշխատանքի քանակութեան յաջորդ պայմանն է ժողովրդի հիւանդութիւնը։ Մարդիկ որքան շատ են հիւանդանում, այնքան աւելի շատ են ժամանակ կորցնում։ Ժողովուրդը որքան առողջ լինի, այնքան շատ կ'աշխատի։ Երկրի մէջ որքան քիչ խուլեր, կոյրեր, համրեր, խելագարներ լինին, այնքան շատ իսկական աշխատողներ կըլինին։ Բայց հասարակութիւնը միայն յանձին նրանց չի կորցնում մարդիկ, ո-

րոնք աւելացնում են նրա աշխատանքի գումարը։ Ամեն մարդ հիւանդանում է։ Որքան լաւ է նրա բնակարանը, ուտելիքը, հագուստը, այնքան սակաւ նա աշխատում է ուժից վեր, այնքան սակաւ է նա հիւանդանում։ Որքան նա վատ է ապրում, ուտում, խմում, հագնում, որքան վատ է այն օդը, որով նա շնչում է, որքան յաճախ հարկադրուած է լինում ուժից վեր աշխատել, այնքան յաճախ նա հիւանդանում է և այնքան աւելի ժամանակ է կորցնում։ Եթէ սնունդը, բնակարանը, օդը վատ են, մարդու օրգանիզմը չի կարող այնպէս զարգանալ, ինչպէս կըզարգանար լաւ ապրուստով։ Աշխատանքը դառնում է աւելի վատ, հիւանդութիւնները պատահում են աւելի յաճախ։ Հասարակութեան մէջ աշխատանքի գումարն այնքան աւելանում է, որքան աշխատողը լաւ է ապրում։ Յետոյ հարկաւոր է նկատել, որ առհասարակ ամեն տեսակ պայմանների մէջ հիւանդութիւնը կախուած է հասակից։ Ամենից քիչ հիւանդանում է չափահաս մարդը և հէնց 30—40 տարեկան հասակում։ 25—30 և 40—45 տարեկանը հիւանդանում են յաճախ. իսկ տղաներն ու ծերերն աւելի շատ։ Ամենից շատ հիւանդանում են երեխաները։ Պարզ է, որ մենք նորից հանդիպեցինք մեր առաջին պայմանին և դարձեալ կարող ենք կրկնել, որ հասարակութեան մէջ որքան շատ են չափահասները (միւսների հետ համեմատելով) և աւելացնել՝ որքան շատ են 30—40 տարեկան մարդիկ, այնքան այդ հասարակութեան կազմը տնտեսապէս շահաւէտ է։

**27. ե. ԱՐՏԱԴՐՈՂՆԵՐԻ ՔԱՆԱԿՈՒԹԻՒՆԸ։** Միանգամայն հասկանալի է, որ տնտեսական աշխատանքի քանակութիւնն աւելանում է այն երկրում, որտեղ մարդկանց մեծ քանակութիւն պարապում է արդիւնաբերական գործունէութեամբ։ Այն երկիրը, որի մէջ 100 բնակչին ընկնում է, օր., 90 երկրագործ, արհեստաւոր և այլն, տնտեսապէս աւելի շահաւէտ կացմութիւն ունի, քան այն, որի մէջ, օր., ընկնում է 75։ Արդէն ասել եմ, որ հասարակութիւնը չի կարող կառավարուել առանց այն մարդկանց, որոնք պարապում են մտաւոր աշխատանքով։ Սակայն նրանք որքան շատ լինին, այնքան քիչ կըլինի այդ հասարակութեան մէջ տնտեսական աշխատանք։ Սրա հետ միասին աշխատանքի քանակութիւնն աւելանում է այնտեղ, որտեղ երեխաները մասնակցում են մեծերի աշխատանքներին։ Երեխայոց համար վնասակար է աշխատել գործարաններում։ Նրանց օրգանիզմը չի կարող դիմանալ երկարատև աճխատանքի վատ օդի մէջ՝ բանւորների շատութեան դէպքում։ Ուստի գրեթէ բոլոր երկրներում երեխայոց աշխատանքն արգելուած է գործարաններում։ Սակայն նրանց տնային աշխատանքը, նրանց առտնին օգնութիւնը ծնողներին այնքան էլ յոգնեցնող և վնասակար չէ։ Ահա թէ ինչու որքան մի երկրում առտնին արհեստանոցներ, առտնին աշխատանք շատ լինին՝ մեծ գործարանների փոխարէն, այնքան էլ կաւելանայ նրա մէջ աշխատանքի գումարը։

28. գ. ՏՕՆԵՐ։ Վերջապէս աշխատանքի գումարը պակասում է այնքան, որքան տօներ ունի ժողովուրդը։ Կան տեղեր (Գերմանիայում), որտեղ, վաղուց չէ, տարուայ մէջ 200 օր տօնում էին, որտեղ, հետեւաբար, աշխատում էին տարուայ $1/3$-ից քիչ աւելի։ Ռուսաստանի մէջ, մի քանի տեղերում կարելի է հաշուել տարուայ մէջ մինչև 130 տօն, կամ մօտաւորապէս տարուայ միայն $2/3$-ը աշխատանքի օր։ Յաճախ տօնում են այնպիսի տօներ, որոնք ամենևին եկեղեցուց սահմանուած չեն և մինչև անգամ այնպիսի տօներ, որոնք պարզապէս հետևանք են տգիտութեան և սնոտիապաշտութեան («Паликоны», «Освященіе Царя-града» և այլն)։ Դրանց քանակութիւնը կրճատւում է միայն մարդկանց զարգացումով և իրանց շահերի կանոնաւոր ըմբռնումով։

Վերջապէս, առհասարակ, որքան մի երկրում աւելի զարգանում է կրթութիւնը, այնքան աւելի սկսում են յարգել աշխատանքը և այնքան աւելանում է հասարակութեան տնտեսական աշխատանքի գումարը։

## ԶՐՈՅՑ ՎԵՑԵՐՈՐԴ

29. ԱՇԽԱՏԱՆՔԻ ԱՐԴԻՒՆԱՒԷՏՈՒԹԻՒՆԸ։ Մենք ծանօթացանք այն պայմանների հետ, որոնցից կախուած է հասարակութեան մէջ աշխատանքի գումարը։ Անցնենք այն պայմաններին, որոնցից կախուած է նրա արդիւ-

նաւէտութիւնը (производительность), նրա որակը (յատկութիւնը)։ Տեսնենք, ինչու մէկը աշխատելով նոյնքան ժամանակ, անում է աւելի շատ և աւելի լաւ, քան ուրիշը։ Ամենից առաջ հարկաւոր է ասել, որ այդպիսի պայմաններ շատ շատ են, և բոլորը քննելու ոչ մի հնարաւորութիւն չկայ։ Քի՞չ պատճառներ կան, որոնցից մարդս կեանքի մէջ աշխատում է աւելի լաւ կամ աւելի վատ։ Իւրաքանչիւր մարդ այդ տեսել է իր շուրջը և մինչև անգամ փորձել է այդ իր վրա։ Միևնոյն մարդը այսօր աշխատում է լաւ, վաղը—վատ։ Մենք կարող ենք ծանօթանալ միայն մի քանի ընդհանուր պայմանների հետ, որոնք ազդում են ամենքի վրա միակերպ և նպաստում են աշխատանքի արդիւնաւէտութեան մեծանալուն։

**30. ԱՐԴԻՒՆԱՒԷՏՈՒԹԵԱՆ ՊԱՅՄԱՆՆԵՐԸ. Ա. ԱՇԽԱՏԱՆՔԻ ԲԱԺԱՆՈՒՄ։** Առաջին այդպիսի պայմանը պիտի համարուի աշխատանքի բաժանումը։ Դուք, կարելի է, երբ և իցէ տեսել էք, ինչպէս քարտաշներն աղիւսները հասցնում են տան վերին յարկերը։ Շատ յաճախ, փոխանակ ձեռքերի վրա դարսած կամ պատգարակով կրելու, նրանք սանդուխքի վրա շարքով կանգնում են և իւրաքանչիւր աղիւսը ձեռքից ձեռք ցածից վեր են տալիս։ Այս եղանակն աւելի յարմար է, որովհետև աւելի քիչ ժամանակ է պահանջում, քան սովորական ձևով կրելիս։

Գնդասեղի գործարանում առաջ ամեն մի գնդասեղ շինում էր սկզբից մինչև վերջը ոչ թէ

մի բանւոր, այլ շատ (մօտ 20 բանւոր), որոնցից իւրաքանչիւրը շինում էր ոչ ամբողջ գնդասեղը, այլ միայն նրա մի մասը։ Մէկը ձգում է երկաթեայ թելը, միւսն ուղղում է նրան, երրորդը կտրում է, չորրորդը սրում է, հինգերորդը շինում է գլխիկը և այլն։ Միայն գլխիկի վրա աշխատում էին երկու թէ երեք վարպետներ, որոնցից իւրաքանչիւրն անում էր առանձին գործ։ Այսպէս էլ խաղաթղթի (կարտ) արտադրութիւնը բաժանուած էր 70-ից աւելի մասնագէտ գործաւորների։

Գործարաններում խոշոր մեքենայական արտադրութեան մէջ ամեն բանւոր կատարում է ընդհանուր աշխատանքի միայն շատ փոքրիկ մասը և երբէք չի շինում իրն ամբողջովին։

Ինչո՞ւ համար են աշխատանքը բաժանում մի քանի անձինքների մէջ, ինչո՞ւ գնդասեղներն, օր., կամ խաղաթուղթը չի շինում մէկ բանւորը։

Նրա համար, որ աշխատանքի բաժանումը շատ և շատ աւելացնում է նրա արդիւնաւէտութիւնը։ Մտածեցէք. օրական քանի՞ գնդասեղ կարող է շինել մի մարդը։ Ասում են, թէ հազիւ մէկը շինէ և յամենայն դէպս քսանը չի շինիլ։ Բայց փոքրիկ գործարանում, առանց նորագոյն մեքենաների, աշխատանքի բաժանումով 10 բանւոր շինում են օրական 48,000 գնդասեղից աւելի կամ ամեն մէկը 4,000-ից աւելի։ Ասում են, որ եթէ մի բանւոր սկսէր շինել ամբողջ խաղաթուղթը, հազիւ թէ օրական երկու թղթից աւելի շինէր։ Խաղաթղթի գործա-

բանում աշխատանքի բաժանումով 30 բանւոր օրական շինում էին 15,000 թուղթ, կամ աւելի քան 500 իւրաքանչիւրը։ Ամեն մարդ կարող է տեսնել նմանօրինակ բան կեանքի մէջ։ Այնտեղ, ուր մի գործի վրա աշխատում են շատերը միասին, աշխատանքն աւելի յաջող է առաջ գնում, քան եթէ այդ մարդիկ աշխատէին ջոկ-ջոկ։ «Երկու շուն միասին աւելի նապաստակ կբռնեն, քան չորսը առանձին» (Անգլիական առած)։

31. ԱՅՍ ՅԱՋՈՂՈՒԹԵԱՆ ՊԱՏՃԱՌՆԵՐԸ։ Ինչի՞ց է առաջ գալիս արտադրութեան այս ահագին արդիւնաւէտութիւնը՝ աշխատանքը բաժանելիս։ Նախ և առաջ, եթէ մարդ իր գործը չի ընդհատում, չի փոխում, շատ ժամանակ է շահում, որ կորչում է, եթէ նա սկսէ մէկ գործից միւսին անցնել։ Եթէ բանւորը օրուայ մի մասը դաշտում աշխատի, իսկ միւս մասը— ոստայնակի մեքենայի տակ և շարունակ այդ աշխատանքները փոփոխէ, նա ոչ միայն շատ ժամանակ կըկորցնէ գնալ գալու համար, այլ և կըկորցնէ այն ժամանակը, որը հարկաւոր է նոր գործին յարմարուելու և ընտելանալու համար։ Եթէ արհեստաւորն օրական մի քանի անգամ փոփոխէր իր աշխատանքը մի քանի արհեստանոցներում, այն ժամանակ աւելի քիչ գործ կըկատարէր, քան այժմ։ Երկրորդ, աշխատանքի բաժանման դէպքում շատ աւելանում է բանւորի ճարպիկութիւնը։ Հասկանալի է, որ ով շարունակ կատարում է շատ տեսակ-տեսակ աշխատանքներ, նա չի կարող անել այնպէս արագ,

որոշ, ճարպիկ, ինչպէս նա, որ ամբողջ կեանքում անում է միայն միևնոյն պարզ հասարակ գործը։ Մարդ որքան էլ լաւ փականագործ լինի, հաւանական է, չըկարողանայ այնպէս ճարտարութեամբ շինել գնդասեղի գլխիկը, ինչպէս նա, որ տասնեակ տարիների ընթացքում ամեն օր ոչինչ չէ արել, բայց եթէ ոչ շինել է այդ գլխիկները։ Որքան էլ լաւ դարբին լինի, չի կարող օրական շատ մեխեր շինել, օր., 200—300, սակայն լինում են 12 տարեկան մեխագործներ, որոնք կարողանում են շինել օրական 2300 հատ։ Երրորդ, աշխատանքի բաժանումը նպաստում է գիւտեր անելու և բարեփոխութիւններ մտցնելու մեքենաների և գործիքների մէջ։ Հասկանալի է, որ եթէ մէկն ամբողջ կեանքի ընթացքում գործ ունենայ միևնոյն մեքենայի կամ գործիքի հետ, այն ժամանակ աւելի հեշտ կարող է մտածել, ինչպէս աւելի յարմարեցնէ նրան իր աշխատանքին, քան եթէ այդ գործիքով աշխատի միայն հազիւ երբեմն։ Շատ գիւտեր արել են բանւորները հէնց նրա համար, որ նրանք շարունակ, երկար ժամանակ արել են միևնոյն բանը, միևնոյն գործիքով կամ շարունակ գործ են ունեցել՝ մեքենայի միևնոյն մասի հետ։

Սակայն հարկաւոր է մատնանիշ անել և այն բանը, որ չնայելով աշխատանքի բաժանման այս բոլոր շահաւէտ կողմերին, նա ունի և մի ուրիշ—չափազանց վնասակար կողմ։ Երևակայենք մի բանւոր, որ իբրև մասնագէտ նուիրուել է աշխատանքի մի որևէ փոքրիկ մասին։

Օր., նա միայն կարող է ձգել երկաթէ թելը՝ գնդասեղ պատրաստելու համար։ Ամեն օր նա ձգում է նորան, օրական 12 ժամ, ձգում է նրան այսպէս իր ամբողջ կեանքում։ Ի՞նչ կլինի նա։ Նա ժամանակ չունի ուրիշ որևէ բան սովորելու, որովհետև ամբողջ օրն զբաղուած է այս աշխատանքով։ Եւ ինչո՞ւ համար սովորի, քանի որ նրա վաստակն աշխատանքի ուրիշ ելլի մի այսպիսի փոքրիկ մասից (օր., գնդասեղի գլխիկը պատրաստելուց) քիչ կզանազանուի կամ բոլորովին չի զանազանուի այժմեանից։ Նշանակում է, որ նրա ծանօթութիւններն ընդարձակուել չեն կարող։ Ընդհակառակը, եթէ նա առաջուց նոյն իսկ ունէր, ստիպուած էր կորցնել նրանց մշտական, անվերջ, անփոփոխ, սահմանափակ և փոքրիկ գործի մէջ։ Բանւորի համար այս պայմաններում զարգանալ, առաջ գնալ չկայ։ Նա բթանում, դառնում է հէնց նոյն մեքենայի մի մասը, որից անբաժան է, և որի բանելուն անդադար պարտաւոր է հետևել։ Այս դեռ քիչ է—նրա շարժումների լիակատար միակերպութիւնից—նրա ոսկորները, մկանները յաճախ ժամանակի ընթացքում ենթարկւում են հիւանդոտ փոփոխութիւնների։ Օր., ամեն մէկը գիտէ, որ մշտական ծալպատակ նստելը պատճառ է լինում ոտքերի ծուռ ձևին (օր. դերձակները)։ Այդպիսի զանազան փոփոխութիւններ շատ են պատահում գործարանական բանւորների մէջ։ —Վերջապէս, այսպիսի բանւորի վաստակն ևս, պարզ է, որ չի աւելանում, որովհետև նա ընդ-

միշտ կապուած է միևնոյն գործի հետ։—Այս պատճառներով պէտք է եզրակացնել, որ աշխատանքի այսպիսի բաժանումը, այսինքն այնպիսի աշխատանքը, երբ ամեն մի բանուոր շինում է ոչ ամբողջ առարկան, այլ առարկայի միայն մի մասը, թէպէտ և աւելացնում է աշխատանքի արդիւնաւորութիւնը հասարակութեան մէջ, բայց և շատ վնասակար ազդեցութիւն է անում բանուորի վրա։

32. ԱՇԽԱՏԱՆՔԻ ՀԱՄԱԽՄԲՈՒՄԸ. 1) ՊԱՐԶ ՀԱՄԱԽՄԲՈՒՄ։ Աշխատանքի արդիւնաւէտութեան վրա այսպիսի ազդեցութիւն է անում և աշխատանքի համախմբումը։ Համախմբումը լինում է պարզ և բարդ։ Պարզ համախմբումի դէպքում, ինչպէս և աշխատանքի բաժանման դէպքում, մի իր շինւում է շատ բանուորների ձեռքով։ Բայց բաժանման դէպքում նա բաժանւում է առանձին մարդկանց մէջ, որոնցից իւրաքանչիւրը աշխատում է նրա առանձին մասի վրա։ Պարզ համախմբման դէպքում մարդիկ միանում են (համախմբւում են) նրա համար, որ բոլոր աշխատանքը կատարեն միասին։ Այսպէս անում են կամ նրա համար, որ աշխատանքը պէտք է հասցնել պայմանաժամին, կարճ միջոցում (հատիկները կթափուին, եթէ հացը ժամանակին չհնձնուի. խոտը կչորանայ, եթէ նրան չքաղեն կանաչուց), կամ նրա համար որ աշխատանքը մի մարդու ոյժից վեր է (մեծ ծանրութիւն բարձրացնելը, գերան ցցելը)։ Բազմութեան ոյժը յաղթում է այն արգելքներին,

որոնց չէ կարող յաղթել մի մարդը: «Բազմութիւնը մեծ մարդ է» (մալօռուս. առած): Մի բանւոր որքան էլ չարչարուի այսպիսի աշխատանքների վրա, նրա աշխատութիւնը միշտ քիչ արդիւնք կտայ առանց ուրիշների օգնութեան:

33. 2) ԲԱՐԴ ՀԱՄԱԽՄԲՈՒՄ: Ի վերջոյ *բարդ համախմբում* կոչւում է բոլոր մարդկանց աշխատանքի գումարը—*իւրաքանչիւրինը իր գործի մէջ*: Իւրաքանչիւրը շինում է ամբողջ առարկան սկզբից մինչև վերջը: Դարբինը շինում է իր սայլակները, երկրագործը վարում է իր արտը: Դարբինը երկրագործին ծախում է նրան հարկաւոր սայլակը, երկրագործը դարբնին ծախում է նրան հարկաւոր հացը: Մինչև այժմ մարդկութիւնը ձգտում է ապրել այնպէս, որ իւրաքանչիւրը չարտադրէ իրան համար *ամեն բան*: Ամեն մէկը շինում է մի բան. երկրագործը — հաց, դարբինը — գութան, դերձակը—հագուստ, մսագործը—միս, ոստայնագործը—մահուդ: Սրանք բոլորը իրար հետ փոխանակում են իրանց ձեռքի աշխատանքը: Իւրաքանչիւրն արտադրում է *աւելի*, քան իրան հարկաւոր է, որպէս զի տայ նրանց, ում հարկաւոր է, իսկ ստացած փողով գնէ ամեն բան, ինչ որ իրան հարկաւոր է: Քաղաքներում արհեստներով են պարապում, գիւղերում—մեծ մասամբ երկրագործութեամբ. որտեղ հանք կայ—հանքագործութեամբ, որտեղ անտառ կայ—փայտի առևտրով և այլն: *Պարապմունքների այս բաժանումով կամ աշխատանքի բարդ*

համախմբումով մարդիկ ստանում են ամեն բան, որ բաւարարութիւն է տալիս թէ իրանց և թէ ուրիշների պիտոյքներին։ Պարզ է, որ սա չի կարող այն չափով վատ հետևանքներ ունենալ բանւորի համար, ինչ չափով մենք տեսանք աշխատանքի բաժանման մէջ։ Սակայն իւրաքանչիւրն հնարաւորութիւն է ստանում այս ճանապարհով ազնուացնել իր արտադրութիւնը, կատարելագործուել նրա մէջ և շատ աշխատել, աւելի յաջող, ճարպիկ, արդիւնաւոր կերպով։

## ՋՐՈՅՑ ԵՕԹՆԵՐՈՐԴ

Այսպէս ուրեմն մենք իմացանք, որ աշխատանքի արդիւնաւէտութեան առաջին պայմանն է նրա բաժանումը և համախմբումը։ Անցնենք երկրորդին—աշխատանքի ազատութեան։

34. Բ. ԱՇԽԱՏԱՆՔԻ ԱԶԱՏՈՒԹԻՒՆԸ։ Ամեն մարդ գիտէ, որ աշխատանքը ծեծի երկիւղով, ստիպմամբ—աշխատանք չէ։ Միայն նա, ով համոզուած է, որ իր աշխատանքից ինքն օգուտ կստանայ, միայն նա էլ լաւ կաշխատի։ Իսկ եթէ նրա աշխատանքից ուրիշն ստանում է օգուտը, այդպիսի բանւորի աշխատանքը քիչ օգուտ կըբերէ, կլինի սակաւ-արդիւնաւէտ։ Այդպէս է հէնց ստրուկների և ճորտերի աշխատանքը։ Հին ժամանակները ամեն տեղ գոյութիւն ունէին և՛ առաջինները և՛ երկրորդները, իսկ ազատ աշխատողներ շատ քիչ կային։ Ստրուկն

համարւում էր իր և ոչ թէ մարդ։ Բոլոր նրա գոյքը պատկանում էր տիրոջը։ Տէրն իրաւունք ունէր նրան սպանելու, ծախելու, փոխելու, ճորտը անբաժան էր տիրոջ հողից, չէր կարող հեռանալ նրանից և պարտաւոր էր աշխատել տիրոջ համար։ Գիտութեան, կրթութեան զարգանալովը ստրկութիւնն էլ, ճորտութիւնն էլ, հետզհետէ ջնջուեցին բոլոր երկրներում, և այժմ Եւրոպայում ոչ մի տեղ չկայ, մնացել է միայն Աֆրիկայում և Ամերիկայում, բայց այնտեղ էլ եւրոպացիք կռւում են այն բանի դէմ, որ բոլոր մարդիկ ազատ լինին։ Մեզանում ճորտական դրութիւնն, ինչպէս յայտնի է, վերացուած է Կայսր Ալէքսանդր Բ-ի կամքով 1861 թուին։ Այդ ստրուկների և ճորտերի աշխատանքն իր արդիւնաւէտութեամբ չի կարող համեմատուել ազատ մարդկանց աշխատանքի հետ։—Իսկապէս ինչ կարիք կայ շատ ջանք գործ դնել մի աշխատանքի վրա, եթէ նրանք գիտեն, որ դրանից նրանց դրութիւնը չի լաւանայ, որ նրանք իրանց աշխատանքից ոչինչ չեն ստանայ։ Չի կարելի մտածել, որ այս պայմաններում աշխատողի կողմից որևէ չափով ջանասիրութիւն գործ կդրուի։ Կարելի է երբեմն միանգամից գործի կպչել, եթէ սպասում է խարազանը կամ ճիպոտը, բայց արդիւնաւէտութեան շատանալը երկար չի տեւէ և իսկոյն կանցնի, հէնց որ կվերանայ պատժի երկիւղը։ Թուերը ցոյց են տալիս, որ ստրուկը աշխատանքի մէջ գործ է դնում կէսից էլ պակաս այն ուժի, որ նա կըկարողանար գործ դնել, եթէ ցան-

կանար։ Հաշուել են, որ (աշխատողներին պահելու ծախսը՝ ստացած եկամուտի արժէքի հետ համեմատելով) ճորտութեան ժամանակ տիրոջ վրա նստել է 3 կոպ. խոտի այն քանակութեան հնձելը, որ նստում է ընդամենը $1/2$ կոպ. ազատ աշխատանքի դէպքում։ Երկու ազատ հնձւորներ կարող են քաղել այնքան, որքան վեց ճորտ միևնոյն ժամանակի ընթացքում։ Աշխատանքի այս սակաւ արդիւնաւէտութիւնը վաղուց լաւ յայտնի էր ստրուկների և ճորտերի տէրերին։ Լինում էին դէպքեր, երբ ստրուկների տէրերը մի կարգի աւելի շտապովի աշխատանքները յանձնում էին կատարելու վարձկան բանւորներին, և ոչ ստրուկներին կամ ճորտերին։ Մի քանի երկրներում իրանք բարելաւում էին իրանց ստրուկների վիճակը, տալիս էին նրանց իրանց վաստակի մի մասը և դրանով հասնում էին այն բանին, որ ստրուկի աշխատանքը դառնում էր աւելի լաւ, արդիւնաւէտ և բերում էր իրանց աւելի օգուտ։

35. Գ. ԳՈՐԾԻՔՆԵՐ։ Աշխատանքի արդիւնաւորութեան երրորդ պայմանն է ա շ խ ա տ ա ն ք ի գ ո ր ծ ի ք ը։ Իսկ ի՞նչ ասել է «աշխատանքի գործիք»։ Առ հասարակ աշխատանքի գործիք կարելի է անուանել այն ամենը, որ օգնում է աշխատանքին, առանց որի աշխատանքը չի կարող կատարուել։ Այս իմաստով գործիք կոչւում է ոչ միայն մեքենան, այլ և շինութիւնը, առանց որի չի կարող կառավարուել բանւորը աշխատելիս, և՛ հողը, որ անհրաժեշտ է եր-

կրագործին։ Բանւորն աշխատում է իրա համար աւելի լաւ, քան ուրիշի համար։ Որքան շատ օգուտ ստանայ ինքն իր աշխատանքից, այնքան աւելի ոյժ և աշխատութիւն գործ կըդնի նա աշխատանքն յաջողակ տանելու համար։ Ուստի աշխատանքը նոյնքան աւելի արդիւնաւէտ է մի երկրում, որքան աւելի աշխատանքի գործիքներ պատկանում են նրանց, որոնք աշխատում են։ Նա, որին պատկանում է հողը, պահպանում է նրան, շուտ-շուտ չի վարում, ուժասպառ չի անում այնպէս, ինչպէս անում է նա, ով կապալով է վերցրել։ Տէրը գիտէ, որ պէտք է պահպանէ երկրի ոյժերը, որպէս զի ապագայում նրանից եկամուտ ստանայ։ Բայց նա, ով վարձել է այդ հողը, միայն իր օգուտն է նայում։ Եթէ նա վարձել է երկար ժամանակով, նա պահպանում է նրան միայն մինչև այն ժամանակը, երբ մօտենում է նրան տիրոջն յանձնելու պայմանաժամը։ Ով կարճ ժամանակով է վարձել, կարիք չունի մինչև անգամ այդ անելու. Նա աշխատում է ստանալ, որքան կարելի է, շատ արդիւնք, առանց ի նկատի առնելու, թէ նա ապագայում էլ եկամուտ կբերէ՞։ Այդպէս էլ ոչ մի բանւոր, որ տիրոջից ռոճիկ է ստանում, չի գործադրի իր բոլոր ոյժերը—չէ՞ որ դրանից նրա ռոճիկը չի աւելանայ։ Միայն ինքը տէրը, որ ստանում է բոլոր օգուտը, կարող է աշխատել իր ոյժերը խիստ լարելով։

36. Դ. ԳԻՏՈՒԹԵԱՆ ՋԱՐԳԱՑՈՒՄԸ։ Վերջապէս, յիշենք աշխատանքի արդիւնաւէտութեան

չորրորդ ամենագլխաւոր պայմանը՝ գիտութեան զարգացումը երկրի մէջ։ Ես արդէն ասել եմ, որ բնութիւնը տալիս է ոյժեր, որոնցից մարդը օգտւում է իր արդիւնաբերական գործունէութեան մէջ։ Բնութեան ոյժերը մարդուն հնազանդեցնելը հէնց նրանում է կայանում, որ մարդը հնազանդեցնէ այդ ոյժերն այնպէս, որ նրանք ծառայեն նրա նպատակներին։ Հասկանալի է, որ մարդը որքան լաւ հնազանդեցնէ իրան բնութիւնը, այնքան քիչ աշխատանք կըմնայ մարդուն, կամ (որ միևնոյն է) աշխատանքի միևնոյն քանակութիւնով կարելի է անել աւելի, այսինքն դրանով աշխատանքը դառնում է աւելի արդիւնաւէտ։ Հետևաբար աշխատանքի արդիւնաւէտութեան համար անհրաժեշտ է բնութեան օրէնքները գիտենալ։ Միայն այն դէպքերում, եթէ մենք ճանաչում ենք բնութիւնը, նրա ոյժերը, նրա օրէնքները, որոնց սրանք ենթարկւում են, միայն այն ժամանակ մենք կարող ենք յաջողութեամբ նրանց հնազանդեցնել, աշխատեցնել մեզ համար և աշխատանքի միևնոյն քանակով աւելի գործ անել։ Շատ առաջ, երբ մարդիկ չըգիտէին, ինչպէս պէտք է շինել ջրաղացը կամ հողմաղացը, նրանք ահագին աշխատանք էին գործ դնում հատիկն աղալու համար։ Այս մտքով ջրի կամ քամու ոյժի հետ ծանօթանալը բերեց մարդկութեան անթիւ օգուտ։ Քանի՜ անգամ աւելի ժամանակ իզուր գործ էին դնում մարդիկ գնալ-գալու և ապրանք տեղափոխելու համար առաջ, երբ դեռ չըգիտէին շոգիի

ոյժերը, չէին կարողանում շինել երկաթուղի և շոգենաւ։ Քանի անգամ արագ է կալսւում հացը շոգեշարժ կալսիչով, քան կամով, փայտեայ կալսիչով (цѣпъ)։ Մի՞թէ գիտութեան զարգացումը չէ՞, որ օգնել է աշխատանքը և ժամանակը խընայել այս բոլոր դէպքերում։ Ձեր շուրջը նայեցէք։ Ամեն մի նոր գութան, նոր ցաքան, նոր գործիք, որ ժամանակի ընթացքում դառնում է անհրաժեշտութիւն տնտեսութեան կամ արհեստի մէջ, հետևանք է գիտութեան առաջ գալուն։ Ուստի գիտութիւնն ահագին տնտեսական ոյժ է։

## ԶՐՈՅՑ ՈՒԹԵՐՈՐԴ

### 3. Դրամագլուխ.

37. ԻՆՉ Է ԴՐԱՄԱԳԼՈՒԽԸ։ Մենք քննեցինք արտադրութեան երկու պայմանները—բնութիւնը և աշխատանքը։ Մեզ մնում է ծանօթանալ երրորդ—դրամագլխի հետ։

Արդէն յիշեցինք, որ առանց գործիքի ոչ մի արտադրութիւն չի կարելի։ Դատարկ ձեռքերով մարդ ոչինչ չի կարող անել։ Երկրագործութեան, արհեստների համար անհրաժեշտ են առանձին գործիքներ։ Եթէ մէկը կերակրւում է միայն որսորդութեամբ և ձկնորսութեամբ, մինչև անգամ նրան հարկաւոր է հրացան, կամ նետ ու աղեղ, կամ ուռկան։ Յետոյ, մարդկանց արդիւնաբերա-

կան գործունէութեան մէջ անհրաժեշտ է հում նիւթ, այսինքն այն նիւթը, որը ենթարկւում է մշակութեան, նախ քան գործածելը։ Վերջապէս աշխատանքով արտադրած իրերը պէտք է պահպանուին, գործիքները—նոյնպէս։ Դրա համար հարկաւոր են շինութիւններ։ Նրանք հարկաւոր են նոյնպէս բանւորներին աշխատելիս։ Ամեն մէկ արտադրութիւն պահանջում է աշխատանքի մի քանի ծախքեր (գործիքների, հում նիւթի, շինութիւնների վրա և այլն), որոնք արուած են նախ քան այդ արտադրութեան սկսուելը։ Առանց դրան արտադրութիւնը հնարաւոր չէ։ Բոլոր այդ ծախքերը կոչւում են դրամագլուխ։

Հետևաբար, դրամագլուխը նախկին աշխատանքի արդիւնքն է։ Բնութիւնն, ինչպէս գիտենք, ձրի ոչինչ չէ տալիս մարդուն։ Նա դրամագլուխն էլ ձրի չի տալիս։ Դրամագլուխը կարող է երևան գալ միայն այն պատճառով, որ առաջուց ծախսել են որև է քանակութեամբ աշխատանք հէնց նրա արտադրութեան համար։ Յետոյ, դրամագլուխ կարող է կոչուել միայն այն իրը, որն հարկաւոր է նոր իրեր արտադրելու համար։ Դրամագլուխ չի կարող կոչուել այն ամենը, որ հարկաւոր է մարդուն իր անմիջական գործածութեան համար, այլ միայն այն, որ հարկաւոր է նոր իրեր արտադրելու համար։ Ուստի դրամագլուխ չէ այն տունը, որի մէջ մենք ապրում ենք, այն հացը, մենք ուտում ենք, այն սեղանը, որի վրա

գրում ենք։ Սակայն այն տունը, որի մէջ զետեղուած է արհեստանոցը, այն հացը, որով մենք կերակրում ենք բանւորներին, այն սեղանը, որի վրա ամրացրած են փականագործի բռնող, սեղմող գործիքները,—այս բոլորը դրամագլուխ է, որովհետև ծառայում է նոր արտադրութեան։

Սրանումն են կայանում երկու անհրաժեշտ պայմանները, որպէս զի որև է իր կոչուի դրամագլուխ։ Նա պէտք է 1) լինի հետևանք նախկին աշխատանքի, և 2) ծառայէ նոր արտադրութեան։ Այսպէս ուրեմն դրամագլուխ կոչւում է մարդու ձեռքով արտադրուած ամեն մէկ առարկայ, որ նշանակուած է նոր արտադրութեան համար։

Իսկ ի՞նչպէս կարող է երևան գալ դրամագլուխը։

38. ԻՆՉՊԷՍ Է ԿԱԶՄՒՈՒՄ ԴՐԱՄԱԳԼՈՒԽԸ։ Ենթադրենք, որ ձկնորսն ապրում է նրանով, որ ձեռքով ձուկ է բռնում և սրանով սնունդ է ստանում։ Ասենք թէ նա ապրուստի ուրիշ ոչ մի միջոց չունի։ Եթէ այս ձկնորսութիւնը տևում է ամբողջ օրը և եթէ այդ օրուայ ընթացքում նա կարողանում է որսալ ոչ աւելի, քան հարկաւոր է իրան և իր ընտանիքը կերակրելու համար, նա ժամանակ չի ունենայ իրան համար ձկնորսական գործիքներ ձեռք բերելու։ Ցանցը, ուռկանը, նաւակը և այլն, մի խօսքով ձկնորսական զանազան գործիքները, ի հարկէ, կաւելացնէին նրա աշխատանքի արդիւնաւէտութիւնը։ Նրանց

օգնութեամբ նա նշանաւոր չափով կաւելացնէր իր որսը։ Բայց նրանց շինելու համար հարկաւոր է ժամանակ, կամ փող է հարկաւոր, որպէս զի գնէ։ Սակայն մեր ձկնորսը ժամանակ չունի։ Նա ամբողջ օրն զբաղուած է ձկնորսութեամբ միայն իր սննդի համար։ Փող էլ չունի, որովհետև օրական նա որսում է միայն այնքան, որքան հարկաւոր է իրան և իր ընտանիքը կերակրելու համար։ Ծախելու համար ոչինչ չի մնում։ Ի՞նչպէս ձեռք բերէ դրամագլուխ։

Յետոյ. ենթադրենք, որ ձկնորսի ճարպիկութեան աւելանալու, կամ ձկան առատանալու, կամ առհասարակ որև է պատճառով ձկնորսի աշխատանքի արդիւնաւէտութիւնը շատացաւ, որ նրա օրական որսը սկսեց ապահովել նրա սննունդը ոչ թէ մի օրուայ, այլ, օր., երկու օրուայ համար։ Այժմ նա որոշ չափով ազատ ժամանակ ունի։ Երկու օրից մէկը նա այժմ կարող է կամ ոչինչ չշինել, կամ ուրիշ որև է բանի վրա գործածել։ Եթէ նա մի օրը գործածէ նրա համար, որպէս զի իրան համար արտադրութեան գործիքներ շինէ (ցանց, ուռկան, նաւակ և այլն) կամ նրա համար, որ ձուկ բռնէ ծախելու համար, որպէս զի արտադրութեան այդ գործիքները գնէ, նա կունենայ դրամագլուխ։ Իսկ եթէ նա իր ազատ ժամանակը գործածէ ուրիշ բաներ շինելու համար, որոնք արտադրութեան համար պէտք չեն, այլ միայն գործածութեան համար պիտանի են (օր., ամանեղէն շինէ, հագուստ կարէ), այն ժամանակ նա առաջուայ պէս դրա-

մագլուխ չի ունենայ։

Այսպէս ուրեմն հարկաւոր է երկու պայման նրա համար, որ առաջ գայ դրամագլուխ— 1) Հարկաւոր է, որ աշխատանքի արդիւնաւէտութիւնն աւելանայ այնքան, որ կարելի լինի օրական աշխատել աւելի, քան հարկաւոր է բանւորի և նրա ընտանիքի օրական ապրուստի համար։ 2) Հարկաւոր է, որ օրական ապրուստն հայթայթելուց յետոյ մնացած ազատ ժամանակը գործադրուի արտադրութեան գործիքների քանակութիւնն աւելացնելու կամ նրանց լաւացնելու վրայ։ Մարդուս դրամագլուխը կարո՞ղ էր աւելանալ, եթէ նա օրական արտադրէր ճիշտ այնքան, որքան ուզում է։ Ի հարկէ, ոչ։ Կարո՞ղ էր դրամատիրոջ դրամագլուխն աւելանալ, եթէ բանւորը նրա համար անէր միայն այն, ինչ որ նա վճարում է նրան իբրև ռոճիկ։ Ի հարկէ, ոչ։ Տիրոջ համար հէնց միայն այն ժամանակ ձեռնտու է բանւոր ունենալ, երբ նրա աշխատանքն այնքան արդիւնաւէտ է, որ հանւում է նրա ռոճիկը և աւելի, որ է օգուտը։ Միայն այն ժամանակ հնարաւոր է դրամագլխի աճելը։

39. ԴՐԱՄԱԳԼԽԻ ԳՈՐԾԱԾՈՒԹԻՒՆԸ։ Այսպիսի ճանապարհով է կազմւում դրամագլուխը։ Եթէ ես ձեռք բերի ցորեն միայն կերակրուելու համար, ես իմ աշխատանքը ծախսեցի։ Ցորենից հաց թխեցի, կերայ—և վերջացաւ։ Ոչ մի նոր

իր չստացայ դրամից։ Ընդհակառակը, ես ոչընչացրի մի որոշ առարկայ—ցորենը։ Իսկ եթէ ես չինեցի կացին, տնտեսեցի (յետ գձեցի) այն աշխատանքը, որ ես գործածեցի նրա արտադրութեան համար։ Այդ աշխատանքի արդիւնքը—կացինը—երկար ժամանակ ինձ կծառայէ իմ ուրիշ աշխատանքների մէջ և կարող է չինել ինձ համար մէկից աւելի պիտանի իրեր ապագայում։ Սակայն, ի հարկէ, դրամագլուխը ծախսւում է։ Մանածը ոչընչանում է, երբ ես նրանից քաթան եմ չինում. ածուխն անցնում է հնոցի մէջ, կացինը կոտրւում է, չինութիւններն հնանում են։ Ի՞նչպէս կարող է ծախսուել այն, ինչ որ տնտեսւում է։ Այստեղ է թագնուած դրամագլխի ամենակարևոր զանազանութիւնը ուրիշ ամեն տեսակ առարկաներից, որոնք արտադրուած են մարդուս աշխատանքով։ Դրամագլուխը ծախսւում է նրա համար, որ վերանորոգուի նոր ձևով, իսկ ուրիշ ամեն առարկայ ծախսւում է անդարձ կերպով։ Մանածը ոչընչանում է, բայց նրա փոխարէն երևան է գալիս քաթանը։ Ածուխը անցնում է, բայց դրա փոխարէն դարբինն ունենում է մի նոր ծախու ապրանք։ Կացինը կոտըրւում է, բայց նրա համար, որ մինչև այդ նա օգնեց մարդուն շատ իրեր չինելու։ Արհեստանոցը հնանում է, բայց մինչև այդ նրա մէջ արտադրուած է շատ արդիւնք։ Իսկ եթէ ուտելիքը կերուած է, հագուստը—մաշուած, մեր բնակարանը—հնացած, այդ առարկաները կորչում

են անպետք և ծառայում համար ոչ մի նոր բան չեն բերում։ Հարկավոր է բաց թողել դրամագլուխի ծախսելու այս զանազանությունը, որից ամեն տեսակ ապրանքները ծախսելուց։ Մենք տեսանք կրկնենք, որ կան այնպիսի դրամագլուխներ, որոնք հենց միայն նրանով ծառայում օգուտ են բերում, որ միանգամից ծախսւում են։

## ԶՐՈՅՑ ԻՆՆԵՐՈՐԴ

### 40. ԴՐԱՄԱԳԼՈՒԽՆԵՐԻ ԿԱԶՄՈՒԹԻՒՆԸ։

Այսպէս, ուրեմն մենք իմացանք, թէ ինչ բան է դրամագլուխը, ինչպէս է նա կազմւում և ինչպէս է ծախսւում։ Տեսնենք կեանքի մէջ ինչպիսի ապրանքները կոչւում են դրամագլուխ, ինչից են կազմւում մարդկանց դրամագլուխները։

Նախ և առաջ, դրամագլուխ կոչւում են հում նիւթերը։ Ծոթեղէնի իւրաքանչիւր գործարանի հարկաւոր է կամ վուշ, կամ կանեփ, կամ բուրդ, կամ բամբակ։ Իւրաքանչիւր կահագործի, ատաղձագործի—փայտ և այլն։ Այս բոլորը կոչւում է հում նիւթը։ Այս նիւթը ձեռք բերւում և վերածւում է այնպիսի կերպարանքի, որով նա դառնում է պիտանի մշակութեան համար։ Հետևաբար այս բոլորի վրա արդէն ծախսուած է մարդկային աշխատանք, նախ քան նրա գործածուելը նոր արտադրութեան համար (օր., ծառը կտրում են, տախտակներ են ձևում, տեղափոխում են և այլն)։

Երկրորդ, դրամագլուխ կոչւում են բո-

լոր **գործիքները**, **մեքենաները** և բոլոր **շինութիւնները**, որոնք նպաստում են աշխատանքի արդիւնաւէտութեանը (կահագործի, դարբնի գործիքը և այլն. շոգեշարժ մեքենան, գիւղատնտեսական և ուրիշ գործիքները—գութաններ, թեղելու և կալսելու գործիքները և այլն. երկաթուղիները, շոգենաւերը և այլն և այլն)։ Հասկանալի է, որ այս բոլորը մարդու նախկին աշխատանքի արդիւնքն է և այս բոլորը ծառայում է նոր արտադրութեան։

**Երրորդ**, դրամագլուխ կոչւում է **տաւարը**։ Տաւարը, ի հարկէ, մարդու աշխատանքով չի ստեղծւում։ Բայց նրան պահպանելու, խնամելու և կերակրելու համար քիչ աշխատանք չի գնում։ Եւ որովհետև նա արտադրութեան մէջ օգնում է մարդուն, ուստի մենք նրան նոյնպէս կարող ենք կոչել դրամագլուխ։ Եղները, որոնցով վարում ենք, ձիերը, որոնցով շարժում ենք կալսիչները կամ ձիթահանքի գործիքները և այլն, այս բոլորը, ի հարկէ, դրամագլուխ է։

**Չորրորդ**, դրամագլուխ են կոչւում այն **բարւոքումները**, որ մարդը կատարում է շրջապատող բնութեան մէջ՝ նրանից աւելի օգուտ ստանալու նպատակով։ Անջուր դաշտերում սարքում են ոռոգումն, ջրհորներ, ջրում են, որ կարելի լինի հաց ցանել և տաւար պահել։ Ծովերի ափին ցած տեղերում շինում են պատուարներ, որ պաշտպանուին ալիքների ճնշումից։ Անպտուղ հողի հետ խառնում են աղբ կամ արհեստական բարւոքումն, որ երկիրը լաւ հունձ

տայ։ Մեծ սարերի միջով անց են կացնում անցքեր (տունէլ), որպէս զի կարելի լինի երկաթուղի կամ հասարակ ճանապարհ ձգել և այլն։ Այս բոլորը հետևանք է մարդու փութաջան աշխատութեան և անում են նրա համար, որպէս զի ընդարձակուի և աւելանայ արտադրութիւնը։

Հինգերորդ, դրամագլուխ են կոչւում այն բոլոր շինութիւնները, որոնք ծառայում են որպէս աշխատելու կամ պատրաստած իրերը պահելու տեղ։ Սրանք են բոլոր արհեստանոցները, գործարանի շէնքերը, ամբարները, կրպակները և այլն.—մի խօսքով ամեն բան, որ ծառայում է արտադրութեան՝ որպէս օդի, ջրի, շոգի, կրակի և ուրիշ ամեն տեսակ Ֆիզիքական աննպաստ երևոյթների ազդեցութիւնից պաշտպանելու միջոց։

Վերջապէս, վեցերորդ, դրամագլուխ կոչւում են այն բոլոր միջոցները, որոնք նշանակուած են բանւորների պահպանութեան համար որև է արտադրութեան մէջ։ Եթէ ես բանւոր չունիմ և ապրում եմ միայն իմ աշխատանքով—կարող է դրամագլուխ կոչուել իմ ուտելիքը, հագուստը և բնակարանը։ Այս բոլորը, ի հարկէ, արդիւնք է նախկին աշխատանքի, բայց նա արդեօք ծախսւում է նոր արտադրութեան համար։ Ի հարկէ, ո՛չ։ Մարդս ուտում է, որպէս զի ապրի, և ոչ թէ նրա համար, որպէս զի նորից աշխատի։ Նա կուտէ մինչև անգամ այն դէպքում, եթէ չաշխատի։ Ուստի այս բոլորը դրամագլուխ անուանել

չի կարելի։ Բայց եթէ ես կերակրում եմ իմ բանւորներին, նրանց ռոճիկ եմ տալիս, նրանց համար բնակարան եմ շինում, դրամագլուխ չի՞ լինի նրանց կերակուրը, այդ ռոճիկը, այդ բնակարանը։ Ի հարկէ։ Այս բոլորը դարձեալ աշխատանքի արդիւնք է։ Նշանակուած է արդեօք նա նոր արտադրութեան համար։ Ի հարկէ, նշանակուած է։ Եթէ ես բանւորներին կերակրում եմ, այդ ուրիշ որև է բանի համար չէ, եթէ ոչ նրա համար, որ նրանք դրա փոխարէն ինձ համար կատարեն որոշ աշխատանքներ։ Ուստի այն բոլոր միջոցները, որոնցով վճարւում է բանւորի աշխատութեան վարձը, գործատիրոջ համար դրամագլուխ են։

41. ՀԻՄՆԱԿԱՆ ԵՒ ՇՐՋԱՆԱՌՈՒԹԵԱՆ ԴՐԱՄԱԳԼՈՒԽ։ Ահա սրանք են դրամագլուխների բաղկացուցիչ մասերը։ Մեզ մնում է մատնանիշ անել նրանց մէջ եղած շատ կարևոր զանազանութեան վրա։

Մենք գիտենք, որ դրամագլուխը ծախսւում է։ Արդեօք միակերպ ծախսւում են բոլոր դրամագլուխները։ Եթէ գարբնոցում հնոցի մէջ ձգուած է ածուխ—նա անցնում է միանգամից։ Եթէ գործածւում է փայտ, նա կարող է ծառայել միայն մի անգամ։ Այդ տախտակից կարելի է շինել մի առարկայ, և յետոյ այդ տախտակն այլ ևս չի կարող ծառայել ոչ մի արտադրութեան։ Բայց եթէ ես ինձ համար գութան շինեմ, նա չի ոչընչանայ մի անգամ ակօսելուց յետոյ։ Նա ինձ համար երկար ժամանակ ծառայում է, ես նրա-

նով վարում եմ շատ հողեր՝ մինչև նրա անպէտք դառնալը։ Եթէ նա տարեկան 50 դեսեատին է վարում և այդպէս աշխատում է 5 տարի, հետևաբար, նա ընդամենը վարում է 250 դեսեատին։ Այնտեղ ամբողջ ածուխը, ամբողջ տախտակը ծախսւում է մի բանի համար։ Այստեղ ամեն մէկ դեսեատինին ծախսւում է միայն գութանի $^{1}/_{250}$ մասը (կամ այն փողի, որ նրա համար վճարուած է)։ Այս զանազանութիւնը շատ կարևոր է։ Յետոյ. ուշք դարձրէք այն բանի վրա, որ ածուխն ու փայտը հէնց նրանով են օգուտ բերում, որ ոչընչանում են։ Ինչո՞վ օգտակար է ածուխը։ Նրանով որ այրւում է։ Ինչո՞վ օգտակար է տախտակը։ Նրանով որ բան շինելու համար պիտանի է։ Եթէ ածուխը չայրուէր, եթէ տախտակը բան շինելու պէտք չըգար, նրանք իրանց բաժին օգուտը չէին բերիլ մարդու. դրամագլուխների թւում չէին լինիլ։ Ընդհակառակը, որքան երկար է ծառայում գութանը, այնքան նա օգտակար է մարդուն։ Նա նրանով չէ օգտակար, որ ոչընչանում է, այլ նրանով, որ մարդուն ծառայում. է և այնքան աւելի օգտակար է, որքան երկար է ծառայում։ Ի՞նչ շահ պիտի լինէր երկրագործութիւնից, եթէ ամեն դեսեատինի համար պահանջուէր նոր գութան։

Այսպէս ուրեմն, ծախսւելու եղանակին նայելով՝ դրամագլուխը կարող է լինել երկու տեսակ։ Նա կամ միանգամից. է ծախսւում, կամ աստիճանաբար։ Առաջին դէպքում նա

իր դերը կատարում է նրանով, որ ոչընչանում է, փոխում է իր ձևը։ Երկրորդում— նրանով, որ շարունակում է գոյութիւն ունենալ։ Առաջին դէպքում նա կոչւում է շրջանառութեան դրամագլուխ. երկրորդում—հիմնական։ Հիմնական դրամագլուխը ծառայում է շատ աշխատանքների մէջ, ոչընչանում (մաշւում)է կամաց-կամաց, աստիճանաբար և մաս-մաս վերականգնում է բազմաթիւ արտադրուած առարկաների մէջ. շրջանառութեան դրամագլուխը ծախսւում է միայն մի գործի մէջ և օգտակար է իր ոչընչանալովը, ոչընչանում է միանգամից և վերականգնում է ամբողջովին իր արտադրած մի առարկայի մէջ։ Մեր օրինակի մէջ գութանը վերականգնում է 250 դեսեատինի մէջ, այսինքն 250 դեսեատինի եկամուտի մէջ մտնում է այն ծախսը, որ արել են գութանի վրա։ Բայց եթէ 1 փունտ ածուխ է հարկաւոր մեխ արտադրելու համար, մեխի եկամուտի մէջ վերականգնում է՝ մտնում է 1 փունտ ածուխի ծախքը։

Բոլորովին հասկանալի է, որ դրամագլուխների վեց բաղկացուցիչ մասերից շրջանառութեան դրամագլխին վերաբերում են հում նիւթեր և բանւորներին պահելու միջոցները։ Միայն սրանք են, որ միանգամից ծախսւում են։ Միւսները բոլորը կամաց-կամաց են ծախսւում, ծառայում են շատ արտադրութիւնների, ուստի պատկանում են հիմնական դրամագլուխներին։

Որքան աւելի ընդարձակւում են մարդկանց ծանօթութիւնները, որքան աւելի ընդարձակւում է նրանց արդիւնաբերական գործունէութիւնը, այնքան ձեռքի աշխատանքը փոխարինւում է մեքենայի աշխատանքով, որ շատ աւելի արդիւնաւէտ է, հետևաբար, շրջանառութեան դրամագլուխները փոխարինւում են հիմնականի։ Մի՞շտ օգտաւէտ է այս փոխարինութիւնը։ Եթէ ստայնագործը ձեռքով տարեկան գործում է 600 արշին մահուդ և եթէ այդտեղ աւելին ծախելն անկարելի է, ձեռնտո՞ւ է թանկագին մեքենան, որ կարող է գործել 6000 արշին, որ չըգիտես՝ ինչպէս ծախես։ Ի հարկէ, ոչ։ 5400 արշինի համար գնող չի լինիլ և իզուր կըկորչի։ Երբ մեքենայով նոր արտադրած բոլոր իրերը կարող են ծախուել, երբ նրանց պահանջ կայ, միայն այդ դէպքում ձեռնտու է լինում ձեռքի աշխատանքը փոխարինել մեքենայի աշխատանքով։ Այստեղ կայ նաև ուրիշ պայման, որից կախուած է մեքենաները մտցնելու օգտակարութիւնը։ Եթէ, օր., մեքենան իր գործողութեան բոլոր ժամանակի ընթացքում տալիս է ընդ ամենը 100 րուբլու աւելի ապրանք, քան միևնոյն ժամանակի ընթացքում արտադրւում էր առաջ առանց նրան, իսկ ինքը մեքենան արժէ 200 րուբլի, կամ մինչև անգամ 100 րուբլի—ձեռնտո՞ւ է գործածել նրան։ Պարզ է, որ վնասակար է, կամ գոնէ անօգուտ է։ Նա ձեռնտու կըլինի միայն այն դէպքում, եթէ նրա գինը պակաս է նրա արտադրած

աւելորդ ապրանքի գնից. և որքան պակաս է, այնքան ձեռնտու է։

## ԶՐՈՅՑ ՏԱՍՆԵՐՈՐԴ

### Բ. Բաշխումն

42. ԵԿԱՄՈՒՏ։ Արդէն իմացանք, ինչ պայմաններ են հարկաւոր, որ մարդ կարողանայ արտադրել այն ամենը, որ բաւարարութիւն է տալիս նրա պիտոյքներին, այսինքն մենք քննեցինք արտադրութիւնը։ Այժմ զբաղուենք արտադրած արդիւնքների բաշխման ուսումնասիրութեամբ։

Ամենքին յայտնի է, որ այն ամենը, ինչ որ արտադրւում է մարդկանց արդիւնաբերական գործունէութեամբ, կոչւում է եկամուտ։ Այն ամենը, ինչ որ վաստակում է երկրագործը կամ արհեստաւորը՝ է նրա եկամուտը։ Մի ամբողջ երկրի տարեկան եկամուտը կազմւում է այն բոլոր բազմաթիւ իրերից, որոնք արտադրւում են նրա ամբողջ ժողովրդի տնտեսական աշխատանքով մի տարուայ ընթացքում։ Ի հարկէ, եկամուտը կարող է նշանակուել նոր արտադրութեան կամ անձնական գործածութեան համար, կամ կարող է շռայլաբար ծախսուել բաւականութիւնների վրա։ Սակայն իւրաքանչիւր իր ինչ բանի համար էլ որ նշանակուի, միևնոյն է, նա կըկոչուի եկամուտ, կըմտնի երկրի եկամուտների մէջ՝ իբրև հետևանք մարդկանց արդիւնա-

բերական գործունէութեան։

43. ԸՆԴՀԱՆՈՒՐ ԵՒ ԶՈՒՏ ԵԿԱՄՈՒՏ։ Եկամուտը լինում է ընդհանուր և զուտ։ Ե՛ւ առանձին տնտեսութեան, և՛ մի ամբողջ երկրի ընդհանուր եկամուտը կոչւում է ամբողջ գումարն այն եկամուտի, որ ստացուած է մի ամսում, մի տարում, մի խօսքով, մի որոշ ժամանակի ընթացքում։ Զուտ եկամուտի գումարն ստանալու համար հարկաւոր է ընդհանուրից հանել արտադրութեան բոլոր ծախքերը։ Ենթադրենք, կահագործն աշխատել է տարեկան ընդամենը 800 ր. կամ որ նա այդ ժամանակի ընթացքում պատրաստել է այդ արժողութեամբ ապրանք։ Նրա ընդհանուր եկամուտն էլ կըլինի 800 ր.։ Որպէս զի նրա զուտ եկամուտն իմանանք, այդ 800 րուբլուց պէտք է հանենք արտադրութեան բոլոր ծախսերը։ Իսկ ի՞նչ ծախսեր կան։ Նախ և առաջ—հում նիւթ գնելու ծախսերը. յետոյ տան կամ այն հողի վարձը, որի վրա շինուած է տունը. յետոյ—տոկոսն այն փողի, որ նա ուրիշ մարդկանցից վերցրել է իր արտադրութիւնն ընդարձակելու համար, վերջապէս վարձկան բանւորների ռոճիկն ու ապրուստը, եթէ նրանք ևս մասն ունին արտադրութեան մէջ։ Եթէ ենթադրենք, որ այդ բոլոր ծախքերն անում են 500 ր., պարզ է, որ կահագործի զուտ արդիւնքը հաւասար կըլինի 300 րուբլու։

44. ԻՆՉՊԷՍ Է ԲԱԺԱՆՒՈՒՄ ԵԿԱՄՈՒՏԸ։ Մենք գիտենք, որ իւրաքանչիւր իր արտադրելու

համար անհրաժեշտ են երեք պայմաններ՝ բնութեան բարիքները, աշխատանք և դրամագլուխ։ Հազիւ է պատահում որ միևնոյն մարդն աշխատելիս ունենար անտեսութիւնն առաջ տանելու համար անհրաժեշտ բնութեան ույժերն ու նիւթերը և բաւականաչափ դրամագլուխ։ Հազիւ է պատահում, որ այս բոլորն ունեցողն ինքը աշխատի։ Պատահում է, որ գիւղացին բաւական հող ունի, ուրիշից չի վերցնում դրամագլուխ (գործիքներ, տաւար, սերմացու) և բանւոր չի պահում։ Սակայն այս հազուադիւտ բան է։ Աւելի յաճախ երկրագործը հողը կապալով է վերցնում ուրիշներից, փոխ է առնում տաւար, սերմացու և այլն, կամ դրամ է փոխ առնում այս բոլորը ձեռք բերելու համար։ Իսկ եթէ նա ապահովուած է և այս բոլորն ունի բաւականաչափ, մեծ մասամբ վարձում է բանւորներ, որոնց վճարում է ռոճիկ։ Պատահում է, որ վարպետը մենակ աշխատում է իր արհեստանոցում, որ շինուած է իր հողի վրա, և ունի բաւականաչափ դրամագլուխ (գործիքներ, նիւթեր և այլն)։ Աւելի յաճախ նա աշխատում է օտարի գործիքով, ուրիշի արհեստանոցում։ Իսկ եթէ այս բոլորն ունի բաւականաչափ, համարեայ միշտ ունենում է բանւորներ, որոնց վճարում է ռոճիկ։

Մենք գիտենք, որ ամեն բան, որ բաւարարութիւն է տալիս մարդկանց պիտոյքներին, արտադրւում է աշխատանքով։ Բայց աշխատողը, այսինքն բանւորը չի ստանում ամբողջ եկամուտը, որ նա արտադրում է։ Աշխատանքը սերտ կա-

պուած է արտադրութեան ուրիշ երկու պայմանների հետ։ Եթէ նրան չ'աջակցէին բնութեան բարիքները և դրամագլուխները, նա չէր կարող մարդկութեանը բերել այն օգուտը, որ բերում է։ Իսկ մենք հիմա տեսանք, որ թէ առաջինները և թէ երկրորդները միայն սակաւ դէպքերում պատկանում են իրանց բանւորներին։ Պարզ է, որ ում պատկանում են բնութեան բարիքները և դրամագլուխները, նրանք պահանջում են եկամուտի մի մասը։ Այսպիսով աշխատանքի վարձատրութիւնից դուրս են գալիս եկամուտի այս մարդկանց մասերը։ Այն մասը, որ ստանում է բնութեան բարիքների տէրը, կոչւում է հ ա ս ո յ թ (րէնտ). այն, որ ստանում է դրամագլխի տէրը, կոչւում է օ գ ո ւ տ, շ ա հ, վերջապէս այն, որ մնում է բանւորին իր աշխատանքի համար, կոչւում է ա շ խ ա տ ա ն ք ի վ ա ր ձ, վաստակ։ Հասկանալի է, որ բոլոր այս մասերը կարող է ստանալ միևնոյն մարդը, եթէ նրան են պատկանում և՛ բնութեան բարիքները, և՛ դրամագլուխը, և աշխատանքը։ Երկու մարդիկ կստանան, եթէ մէկին պատկանում են բնութեան բարիքները և դրամագլուխը, իսկ միւսին աշխատանքը, կամ մէկին բնութեան բարիքները և աշխատանքը, միւսին դրամագլուխը, կամ մէկին դրամագլուխն ու աշխատանքը, միւսին—բնութեան բարիքները։ Վերջապէս այդ մասերը կարող են ստանալ երեք մարդիկ, եթէ մէկին պատկանում է դրամագլուխը, միւսին—բնութեան բարիքները, իսկ երրորդինը—աշխատանքը։ Ու-

տի երկրի արդիւնքի այս երեք մասի բաժանելը չի նշանակում, թէ հասարակութեան մէջ միշտ գոյութիւն են ունեցել մարդկանց երեք դասակարգ, որոնցից մէկին պատկանէր միայն հողը (բայց ոչ աշխատանքն ու դրամագլուխը), միւսին—միայն աշխատանքը (և ոչ երկիրն ու դրամագլուխը) իսկ երրորդին—դրամագլուխը (բայց ոչ երկիրն ու աշխատանքը)։ Այսպիսի բաժանում երբեմն, յիրաւի, լինում է։ Օր., Անգլիայում հողատէրերը կապալով են տալիս իրանց հողերը մեծ մասամբ խոշոր հողաբաժիններով, իսկ կապալառուները վարձում են բանւորներ։ Կապալառուներն անում են բոլոր ծախսերը, իսկ բանւորները, որ հող չունին, ապրում են միայն աշխատանքի վարձով։ Աւելի յաճախ եկամուտը բաժանւում է երկու մարդու մէջ, որովհետև բանւորը համարեա միշտ բերում է իր հետ միայն աշխատանք, իսկ բնութեան բարիքների տէրը շատ յաճախ ունենում է և արտադրութեան անհրաժեշտ դրամագլուխը։

## ԶՐՈՅՑ ՏԱՍՆՄԷԿԵՐՈՐԴ

### 1. Հասոյթ.

45. ՈՐՈՇՈՒՄՆ։ Ասացի, որ հասոյթ (ռէնտ) կոչւում է արտադրութեան եկամուտի մի մասը, որ ստանում է բնութեան բարիքների տէրը, որոնց օգնութեամբ իրն արտադրուած է։ Օր.,

նա որ իր հողի վրա անտեսութեամբ պարապում է ինքն անձամբ, ինչպէս գիտենք, արդիւնքների թւում ստանում է նոյնպէս և հասոյթը։ Հասոյթ վճարում է նաև կապալառուն հողատիրոջը։

46. ՀԱՍՈՅԹԻ ԵՒ ԿԱՊԱԼԱԳՆԻ ՏԱՐԲԵՐՈՒԹԻՒՆԸ։ Սակայն հարկաւոր է հասոյթը զանազանել կապալագնից։ Երբեմն կապալագնով վճարւում է միայն հասոյթ, այսինքն հասոյթը նոյնանում է կապալագնի (արէնդ) հետ։ Սակայն ուրիշ կերպ էլ է պատահում։ Յաճախ հասոյթը կապալագնի միայն մի մասն է կազմում։ Եթէ ես վարձեմ այնպիսի հող, որի վրա տէրը ոչ մի կոպէկ չէ ծախսել, որի մէջ ոչ մի դրամագլուխ չէ դրել, ես նրան կըվճարեմ միայն նրան պատկանող բնութեան բարիքների փոխարէն, այսինքն միայն հասոյթ։ Ուստի բացի հասոյթից իմ վճարած կապալագնի մէջ ոչինչ չի մտնիլ։ Իսկ եթէ հողատէրն ինձ տայ հողի հետ միասին և այն դրամագլուխը, որ նա նրա վրա ծախսել է—շէնքերը, գործիքները, սերմացուն, տաւարը, բարւոքման և ոռոգման միջոցները և այլն, այն ժամանակ իմ վճարելի կապալագնի մէջ կըմտնի ոչ միայն հասոյթը (րէնտ), այսինքն բնութեան բարիքներից օգտուելու վարձը, այլ և նրա դրամագլխի շահը, այսինքն այն եկամուտը, որ նրա ծախսած դրամագլուխը բերում է։ Ուրեմն երբեմն կապալագնի մէջ մտնում է միայն հասոյթը, իսկ երբեմն էլ հասոյթը և օգուտը նայելով այն բանին, թէ արտադրութեան

դրամագլուխը պատկանում է կապալառուին, թէ նրա մի մասը պատկանում է հողատիրոջը։ Եթէ դարբինն ուրիշի հողի վրա դարբնոց շինէ իր հաշւով, չըպէ՞տք է հողատիրոջն իբրև կապալագին միայն հասոյթ վճարէ։ Ի հարկ է, որովհետև այս դէպքում սեփհականատէրը ոչ մի դրամագլուխ չի ծախսել։ Իսկ եթէ դարբինը վճարում է տիրոջը նրան պատկանող դարբնոցի համար վարձ, միայն հասոյթ է վճարում։ Ի հարկէ ո՛չ, որովհետև բացի հասոյթից այդ վճարի մէջ մտնում է նաև դարբնոցի շինութեան վրա ծախսած դրամագլխի օգուտը։

47. ՀԱՍՈՅԹԻ ԾԱԳՈՒՄԸ։ Սակայն հարկաւոր է միտը պահել, որ ամեն հող հասոյթ չի բերի։ Կան հողեր, որոնցից այդպիսի եկամուտ չի ստացւում։ Ենթադրենք, թէ մի դեսեատին ցորենի մշակութիւնն արժէ 18 ր. (այսինքն այդ գումարով է գնահատւում աշխատանքի վարձը)։ Բացի դրանից ենթադրենք, որ տիրոջ ամբողջ դրամագլուխը—շինութիւնները, գործիքները, սերմացուն, տաւարը և այլն—հաւասար է 40,000 ր. և ունի 100 դեսեատին հող։ Ամբողջ օգուտն 5°/$_0$ հաշւելով՝ նա պէտք է ստանայ 200 ր. կամ իւրաքանչիւր դեսեատինից 2 ր.։ Այսպէս ուրեմն աշխատանքի վարձը (18 ր.) և օգուտը (2 ր.) միասին կազմում են ընդամենը 20 ր.։ Ենթադրենք, որ նա տալիս է իւրաքանչիւր դեսեատինից ընդամենը 2 չետվերտ։ Եթէ ցորենի չետվերտն արժէ 10 ր., հետևաբար հողն աշխատանքի վարձից և օգուտից դուրս ա-

ւելի ոչինչ չի տալ․ այսինքն հասոյթ չի բերի։ Աւելի լաւ հողի վրա նոյն ծախսերով կարելի է ստանալ աւելի լաւ բերք, օր․, 3 չետվերտ, և հետևաբար այդ հողը մի չետվերտ կամ 10 ր․ հասոյթ կտայ, կամ միևնոյն բերքը, բայց աւելի քիչ ծախսերով՝ օր․, 15 ր․, և այն ժամանակ նա կտայ $^1/_2$ չետվերտ կամ 5 ր․ հասոյթ։ Նշանակում է, հասոյթ չեն տալիս վատ հողերը, և որքան հողը լաւ է, այնքան էլ հասոյթն աւելի է։ Ինչու այսպէս է։ Ամեն մէկը գիտէ, որ ցորենի գինը նաւահանգիստ ունեցող քաղաքներում ամենքի համար միակերպ է։ Տասփթանոց ցորենը ծախում է միևնոյն գնով ամեն մէկը․ և՛ նա, որի վրա դեսեատինի մշակութիւնը 10 ր․ է նստել, և՛ նա, որի վրա 20 ր․ է նստել, և՛ նա, որի վրա—25 ր․։ Պարզ է, որ որքան արժան նստի մշակութիւնը, այնքան շատ կաշխատի հողատէրը։ Հասկանալի է նոյնպէս և այն, որ այդ աշխատանքն այնքան աւելի կլինի, որքան արժան լինի ցորենի տեղափոխութեան ծախքը։ Ուստի մեծ հասոյթ կստացուի այն հողից, որն աւելի մօտ կլինի վաճառելու տեղին, քան այն հողից, որն հեռու է (եթէ այդ հողերի յատկութիւնը միակերպ է)։ Իսկ եթէ վաճառելու տեղի հեռաւորութիւնը միևնոյն է, շատ կստացուի այն հողից, որ լաւ յատկութիւն ունի։

Նկատենք նաև, որ ցորենի գինն անպատճառ պէտք է ծածկէ արտադրութեան ամենամեծ ծախքերը։ Մեր օրինակի մէջ աշխատան-

քի վարձը և օգուտն հաւասար էին 20 ր., և դեսեատինը տալիս էր 2 չետվերտ։ Ենթադրենք թէ ամենալաւ հողը նոյնպէս տալիս է 2 չետվերտ, բայց եթէ աշխատանքի վարձն ու օգուտը 10 ր. լինի, այսինքն չետվերտի գինը ոչ թէ 10 ր., այլ 5 ր.։ Ի՞նչ է դուրս գալիս։ Առաջին հողատէրն ստանում է իր 2 չետվերտի համար (նոյնպէս, ինչպէս և երկրորդը) միայն 10 ր. և հետևաբար զուտ վնաս է տեսնում 10 ր.։ Կարո՞ղ է նա շարունակել տնտեսութիւնը։ Ի հարկէ ո՛չ։ Նա պէտք է բոլորը ծախէ, ձգէ հողը և ուրիշ բանով պարապի, որ նրան վնաս չի տայ։ Նշանակում է, մշակւող ցորենի քանակութիւնը կըպակասէր և մարդիկ չէին ստանալ այն բոլոր ցորենը, որ նրանց հարկաւոր էր։ Ուստի, որպէս զի ցորենի հարկաւոր քանակութիւնը չըպակասի, անհրաժեշտ է, որ չետվերտի գինը հանէ արտադրութեան ամենամեծ ծախքերը. այսինքն ամենավատ հողերի վրա եղած ծախքերը։ Եթէ կան մի քանի հաւասար հողաբաժիններ, որոնցից մէկի վրա արտադրութեան ծախքերը հաւասար են 25 ր., միւսի վրա—20 ր., երրորդի վրա—15 ր., չորրորդի վրա—10 ր., և նրանցից ամեն մէկը տալիս է 2 չետվերտ, այն ժամանակ անհրաժեշտ է, որ չետվերտի գինը 12 ր. 50 կոպէկից պակաս չըլինի։ Այլապէս ձեռնտու չէ մշակել բոլոր այդ հողաբաժինները։ Իսկ եթէ այդ այդպէս է, եթէ նրանք բոլորը տալիս են 25-ական րուբլու, հետևաբար չորրորդի (ամենալաւի) հասոյթը=15 ր., երրորդինը=10 ր., երկրորդինը=

5 ր,. իսկ առաջինը (ամենավատը) հասոյթ բոլորովին չի տալիս։

Վերջապէս, կարող է հացի գինն այնքան բարձրանալ, որ ամենավատ հողերի մշակութեան ծախքերից էլ բարձր դառնայ։ Այն ժամանակ վերջիններս նոյնպէս հասոյթ կտային։ Բայց սովորաբար այդպէս չի չինում։ Չէ որ ամեն մի գնող աշխատում է հացը գնել աւելի արժան, իսկ ամեն մի ծախող ցանկանում է վաճառել իր ապրանքը։ Դրա համար հացի գինը ձգտում է լինել աւելի պակաս, միայն թէ երկրագործն ստիպուած չըլինի այդ արժանութիւնից ձգել իր գործը։

48. ՀԱՍՈՅԹԸ ՀԱՇՈՒԵԼԸ։ Ուրեմն մի անգամ էլ կրկնենք. ամենավատ հողերը հասոյթ չեն կարող տալ։ Որքան հողը լաւն է, այնքան նրա հասոյթը մեծ է։ Հետևաբար, հասոյթը ծագում է նրանից, որ բոլոր հողաբաժինները հաւասար չեն յատկութեամբ և միևնոյն հեռաւորութեան վրա չեն գտնւում վաճառելու տեղից։ Ի՞նչպէս պէտք է հաշուել հասոյթը։ Մենք հէնց նոր այդ արինք։ Հարկաւոր է դուրս գալ արտադրութեան ամենապակաս ծախքերը ամենամեծերից, եթէ տուած հողաբաժինների եկամուտը միևնոյն է։ Կամ (որ միևնոյն է) եթէ տրուած են միևնոյն ծախքը պահանջող հողաբաժիններ՝ բայց տարբեր չափով արդիւնաւոր, պէտք է իւրաքանչիւր հողաբաժնի արդիւնքից

հանել ամենավատ արդիւնքը։ Ահա օրինակ։ Ենթադրենք, մենք ունինք երեք հողաբաժին՝ իւրաքանչիւրը 50 դեսեատին։ Միևնոյն ծախքերով առաջինը տալիս է 200 չետվ., երկրորդը—100 չետվ., երրորդը—50։ Ասենք թէ արտադրութեան բոլոր ծախքերն հաւասար են 10 րուբլու ամեն դեսեատինի վրա, կամ 500 ր. ամեն հողաբաժնի վրա։ Մի չետվերտ հացի գինը հաւասար է 10 ր., որովհետև ամենավատը տալիս է դեսեատինին—1 չետվ., առաջինը կըտայ 2000 ր. եկամուտ, երկրորդը—1000 ր., երրորդը —500 ր.։ Պարզ է որ առաջնի հասոյթը կըլինի (2000—500)=1500 ր., երկրորդինը (1000—500) =500 ր. իսկ երրորդը հասոյթ չի տալ։ Իսկ այդ երեք հողաբաժինների հասոյթը, պարզ է, կըլինի (1500+500)=2000 ր.։

## ՁՐՈՅՑ ՏԱՍՆԵՐԿՈՒԵՐՈՐԴ

### 2. Օգուտ.

49. Ի՞ՆՉ Է ՕԳՈՒՏԸ։ Անցնենք օգուտին, այսինքն (ինչպէս մենք գիտենք) եկամուտի այն մասին, որը պատկանում է դրամագլխի տիրոջը։ Ի՞նչ է օգուտը։ Հասկանալի է, որ սա այն մնացորդն է, որը կստացուի, եթէ ընդհանուր եկամուտից հանենք հասոյթը և աշխատանքի վարձը։ Ենթադրենք թէ ես ինքս դարբին չեմ, բայց ուրիշից վարձեցի մի հողաբաժին, մեծ ճանապարհի վրա դարբնոց շինեցի և նրա

մէջ պահում եմ վարձկան դարբին։ Նա աշխատում է իմ գործիքներով և իմ ածուխով։ Ասենք թէ այդ դարբնոցը տուեց ինձ տարեկան 800 ր. ընդհանուր եկամուտ։ Ի՞նչպէս պէտք է հովուեմ իմ դրամագլխի բերած օգուտը։ Հանենք առաջ հում նիւթի գինը, ասենք—300 ր.։ Մնում է 500 ր.։ Դուրս գանք այն հասոյթը, որ ես վճարում եմ հողատիրոջը—ասենք 50 ր.։ Մնում է 450 ր.։ Դուրս գանք դարբնին պահելու ծախքը (ռոճիկ, ուտեստ և այլն) ասենք—200 ր.։ Մնում է 250 ր.։ Վերջապէս; դէն գցենք 50 ր. տարեցտարի ծախսւող դրամագլուխը վերականգնելու (դարբնոցի և գործիքների նորոգութիւն և այլն)։ Մնում է 200 ր.։ Ահա հէնց այս մնացորդն էլ կազմում է գործի մէջ դրած իմ դրամագլխի շահը, օգուտը։ Եթէ իմ ամբողջ դրամագլուխը հաւասար է 2000 ր., այն ժամանակ ես ասում եմ, որ այդ դարբնոցը, այս ձեռնարկութիւնը տալիս է ինձ 10 %, եթէ 4000 ր. է,—5 % և այլն։

50. ՕԳՈՒՏԻ ԾԱԳՈՒՄԸ։ Իսկ ո՞րտեղից է ստացւում օգուտը։ Մտածեցէք, ինձ համար ձեռնտո՞ւ կըլինէր պահել վարձկան դարբնին, եթէ նրա բոլոր աշխատանքը ես նրան վերադարձնէի իբրև ռոճիկ կամ աշխատութեան վարձ։ Ի հարկէ, ո՛չ։ Միայն այն ժամանակ ինձ հաշիւ է բանուոր պահելը, երբ նա ինձ համար կաշխատի աւելի, քան ես նրան վճարում եմ։ Ասենք թէ ես նրան վճարում եմ տարեկան 200 ր.։ Եթէ նա ինձ համար աշխատէր տարեկան միայն

200 ր., ես վնաս կըտեսնէի, որովհետև ես ուրիշ ծախքեր էլ ունիմ դարբնոցի վրա։ Ասենք թէ նա աշխատի 600 ր. (բոլոր ծախքերն առանց օգուտի), նրա աշխատանքից դարձեալ ինձ ոչ մի օգուտ չկայ։ Եւ միայն այն ժամանակ, երբ նա ինձ կտայ 600 րուբլուց աւելի, օր., 800 ր., ինձ ձեռնտու է ծախսել իմ դրամագլուխը։ Այս օրինակի մէջ դարբնի ռոճիկը դարբնոցի ընդհանուր եկամուտի $^{1}/_{4}$ մասն է ($^{200}/_{800}$)։ Ուստի, եթէ նա օրական աշխատում է 10 ժամ, նշանակում է դրանից նա իր անձի համար աշխատում է միայն այդ ժամանակի $^{1}/_{4}$-ը կամ $^{10}/_{4}$ ժամ—$2^{1}/_{2}$ ժամ, իսկ դրամատիրոջ (կապիտալիստի) համար—$7^{1}/_{2}$ ժամ։ Եթէ դրամագլուխը պատկանի իրան դարբնին, միայն այն ժամանակ նա կաշխատէր լոկ իրան համար (չըհաշուելով հասոյթը—րէնտը)։ Հետևաբար, օգուտը, շահը հետևանք է այն բանի, որ բանւորն իր աշխատանքով գործատիրոջ համար աշխատում է աւելի, քան ինքն ստանում է։ Եթէ դարբինն ինքը և՛ տէր, և՛ բանւոր, դրանից բանն ամենևին չի փոխւում. տարբերութիւնը միայն նրանումն է, որ աշխատանքի վարձն ու օգուտը ստանում է միևնոյն մարդը։

51. ԲԱՆՒՈՐԱԿԱՆ ՕՐ. ԱՆՀՐԱԺԵՇՏ ԵՒ ՅԱՒԵԼԵԱԼ ԲԱՆՒՈՐԱԿԱՆ ԺԱՄԱՆԱԿ։ Ժամերի այն բոլոր քանակութիւնը, երբ բանւորն աշխատում է օրուայ ընթացքում, կոչւում է բանւորական օր։ Այս քանակութիւնից ժամերի այն

թիւը, որի ընթացքում արտադրւում են աշխատանքի վարձի արժէքին հաւասար արդիւնքներ, կոչւում է անհրաժեշտ բանւորական ժամանակ. իսկ բոլոր մնացածը (մինչև բանւորական օրուայ ժամերի թիւը լրացնելը)—յաւելեալ բանւորական ժամանակ: Ի՞նչպէս հաշուենք օգուտը: Պարզ է, որ ամբողջ բանւորական օրուայ արդիւնքների գումարից պէտք է հանել անհրաժեշտ բանւորական ժամանակի ընթացքում պատրաստուած արդիւնքների գումարը: Հետևաբար, օգուտն այնքան շատ է, 1) որքան քիչ է անհրաժեշտ բանւորական ժամանակը, կամ 2) որքան մեծ է բանւորական օրը, կամ 3) որքան մեծ է յաւելեալ բանւորական ժամանակը: Եթէ աշխատանքի արդիւնաւէտութիւնը շատանում է, նշանակում է, կարելի է աւելի շուտ արտադրել այն արդիւնքների գումարը, որոնց գինը հաւասարւում է աշխատանքի վարձին: Անհրաժեշտ բանւորական ժամանակն այս դէպքում, պարզ է, որ պակասում է, իսկ օգուտն աւելանում է: Եթէ բարձրանում է աշխատանքի վարձը, նշանակում է աւելի դանդաղ է պատրաստւում արդիւնքների այն գումարը, որոնց գինը հաւասար է աշխատանքի վարձին: Անհրաժեշտ բանւորական ժամանակն այս դէպքում շատանում է, իսկ օգուտը, հետևաբար, քչանում:

52. ՕԳՈՒՏԻ ԲԱՂԿԱՑՈՒՑԻՉ ՄԱՍԵՐԸ։ Որևէ արտադրութեան օգուտից միշտ մէկ անձն չի օգտւում։ Յաճախ նրանից օգտւում են մի քանի մարդիկ։ Այս դէպքում օգուտը կարող է բաժանուել հետևեալ մասերի. 1) Ձեռնարկութեան ռիսկի (վտանգաւորութեան) վճարը։ Եթէ ես իմ փողերս տալիս եմ մէկին որևէ գործ վարելու համար, ես ի հարկէ ամենից առաջ նայում եմ, թէ որքան հաւատալի է, թէ գործը կըյաջողուի և թէ իմ փողերս չեն կորչի։ Եթէ ձեռնարկութիւնը վստահելի չէ, եթէ հեշտութեամբ կարելի է մտածել, որ նա վնաս կըբերի, ես ցանկանում եմ մեծ շահ ստանալ իմ դրամագլխից։ Որքան գործը վստահելի լինի, այնքան օգուտի այս մասը պակաս կըլինի 2) Գործը վարելու հոգացողութեան վճարը։ Օգուտի այս մասն ստանում է նա, ով կառավարում է ձեռնարկութիւնը, ով հոգս է տանում նրա վրա։ 3) Փոխ վերցրած դրամի տոկոսը։ Ով գործի համար փող է տալիս, սովորաբար առանց տոկոսի չի տալիս։ Պարզ է, որ օգուտի մէջ պիտի մտնի և այդ գումարը՝ այն տոկոսը վճարելու համար։ Եթէ դրամատէրը գործ է վարում իր սեփական փողով, ինքը կառավարում է և ինքը կրում է իր վրա ձեռնարկութեան բոլոր պատասխանատւութիւնը, օգուտի այս բոլոր մասերը կըմնան միայն իրան։ Իսկ եթէ նա փողն ուրիշից է վերցրել, գործը վարելու համար մարդ է վարձել, այն ժամանակ, ի հարկէ, տոկոսը տրւում է առաջինին, իսկ հո-

վացողութեան վճարը—երկրորդին, իսկ իրան մնում է միայն ձեռնարկութեան րիսկի վճարը։

## 53. ՕԳՈՒՏԻ ԸՆԴՀԱՆՈՒՐ ՈՒՂՂՈՒԹԻՒՆԸ։

Հասկանալի է, որ վտանգաւոր գործերն աւելի մեծ օգուտ են տալիս, քան ապահովները (вѣрныя): Իսկ օգուտի ընդհանուր դրութիւնը (բարձրութիւնը) շատ քիչ պէտք է փոխուի, կամ գրէթէ չըպէտք է փոխուի բոլոր ձեռնարկութիւնների մէջ։ Ենթադրենք, թէ մեր տեղի միջին օգուտը 5% է, և ասենք թէ դարբնութիւնը յանկարծ սկսեց տալ 10%։ Սրանից ի՞նչ դուրս կըգայ։ Ամեն մարդ, ով կարող է, կսկսէ ձգել իր գործը, դարբնոց կըհիմնէ, դարբիններ բերել կտայ, իր որդոցը դարբնութեան կըսովորեցնէ և այլն։ Եւ ահա շուտով դարբիններն այնքան կըբազմանան, որ ստիպուած կըլինին իրանց արդիւնքների գինը չափից դուրս պակասեցնել, որ իրար ձեռքից աշխատանք խլեն։ Օգուտն, ի հարկէ, արագ կերպով կընկնի։ Ասենք թէ նա իջաւ 5%-ից էլ ցած, մինչև 3%։ Ի՞նչ դուրս կըգայ։ Հասարակ երևոյթը։ Կըսկսեն փակել դարբնոցները, ուրիշ գործով կըպարապեն, կամ կերթան ուրիշ տեղեր աշխատանք գտնելու։ Ի վերջոյ, կըմնան քչերը. այլ ևս նրանց հարկ չի լինիլ իրար ձեռքից աշխատանքը խլելու, և նրանց արդիւնքների գներն էլ կըբարձրանան։ Հետևաբար, օգուտը կըսկսի բարձրանալ։ Այսպէս ուրեմն, օգտի համար ընդհանուր կանոն է, որ նա թէպէտ և տատանւում է, բայց և այնպէս բոլոր պարապմունքների մէջ

ձգտում է միևնոյն մակերևոյթին։

## ԶՐՈՅՑ ՏԱՍՆԵՐԵՔԵՐՈՐԴ

### 3. Աշխատանքի վարձը.

54. Ի՞ՆՉ Է ԱՇԽԱՏԱՆՔԻ ՎԱՐՁԸ։ Անցնենք, վերջապէս, եկամուտի երրորդ մասին— աշխատանքի վարձին։ Աշխատանքի վարձ կոչւում է եկամուտի այն մասը, որ վճարւում է բանւորներին նրանց աշխատութեան համար։

55. ԲՆԱԿԱՆ ԵՒ ԻՐԱԿԱՆ ՎԱՐՁ։ Կարելի է զանազանել աշխատանքի երկու տեսակ վարձ— բնական և իրական։ Բնական կոչւում է աշխատանքի այնպիսի վարձատրութիւնը, որն իսկ և իսկ հաւասար է նրան, ինչ որ վճռականապէս անհրաժեշտ է բանւորի և նրա ընտանիքի ապրուստի համար։ Աշխատանքի գնում է նա, ով իր անտեսութիւնից բաւականին եկամուտ չի ստանում, կամ ով սեփական անտեսութիւն բոլորովին չունի։ Պարզ է, որ բանւորին անհրաժեշտ է գոնէ այնքան վաստակել, որ կարողանայ ապրել իր ընտանիքի հետ, այսինքն որ կարողանայ բաւարարութիւն տալ իր առաջնակարգ պահանջներին։ Դրանից պակաս նա երկար ժամանակ ստանալ չի կարող։ Այն ազգը, որ չի կարողանում իր առաջնակարգ կարիքներին բաւարարութիւն տալ, ենթարկւում է զօրեղ հիւանդութիւնների և սկսում է մեռնել։

Այս տեղից հասկանալի է, որ աշխատանքի

վարձը երկար ժամանակով չի կարող անցնել այն սահմանից, որով բանւորը բաւարարութիւն է տալիս իր անհրաժեշտ կարիքներն, այսինքն բնական չափից։ Բայց իրօք բանւոր վարձելիս ոչ ոք չի հարցնում նրա անհրաժեշտ կարիքների մասին։ Գործի տէրն ուզում է բանւոր վարձել աժան գնով, իսկ բանւորն ուզում է գործատիրոջից, որքան կարելի է, աւելի ստանալ։ Որքան շատ են գործ որոնող բանւորները, այնքան աւելի մէկը միւսի աշխատանքի գինը պակասեցնում է, այսինքն վարձն այնքան աւելի իջնում է, և ընդհակառակը—որքան շատ բանւոր է պէտք տէրերին, այնքան նրանք գինը բարձրացնում են, այսինքն՝ այնքան աշխատանքի վարձը բարձրանում է։ Հէնց այս վարձը, որ սահմանւում է վարձելիս, կամ, ինչպէս ասում են, շուկայում, և իսկապէս վճարւում է բանւորին, կոչւում է շուկայի կամ իրական վարձն։

Ենթադրենք՝ թէ բանւորները շատ շատ են, գինը շատ պակասեցնում են, մեծ ճիգ են թափում աշխատանք գտնելու համար, առանձնակի վարձը աւելի ու աւելի պակասում է և բնականից ցած է իջնում։ Հետևաբար, նրանց անհրաժեշտ կարիքները բաւարարութիւն չեն ստանում։ Նրանք ստիպուած կլինեն կամ ուրիշ երկրներ գաղթել, կամ հիւանդանալ և մեռնել։ Այս կամ այն պատճառով նրանց քանակութիւնը, հետևաբար, սկսում է պակասել, վճարն սկսում է բարձրանալ մինչև բնականի մակերե-

ւոյթը։ Ընդհակառակը, ենթադրենք, թէ որևէ պատճառով բանւորները պակասեցին, աւելի քան հարկաւոր է տէրերին։ Վերջիններս ստիպուած են լինում գինը բարձրացնել, շուկայի (իրական) վճարը բարձրանում է բնականից։ Ի՞նչ դուրս կըգայ։ Բանւորների վիճակը կըբարւոքուի. Նրանք աւելի լաւ սնունդ կըստանան և աւելի լաւ կապրեն, ժողովուրդը կսկսի արագ աճել, իսկ բանւորների թիւը, հետևաբար, կաւելանայ։ Կարող է պատահել, որ բանւորներ գան ուրիշ տեղից, որտեղ վճարը վատ է։ Եւ ահա դարձեալ կսկսեն իրական վճարը իջեցնել (կտրել) մինչև բնականի չափը։ Այսպէս ուրեմն ինչքան էլ որ տատանուի իրական վճարը, նա միշտ ձգտում է հասնել բնականին, այսինքն՝ այն քանակութեանը, որը հազիւ բաւականացնում է առաջնակարգ անհրաժեշտութեան առարկաները ձեռք բերելու։

**56. ԲԱՐՁՐԱՑՆՈՂ ԵՒ ԸՆԿՆՈՂ ԱՐԴԻՒՆԱԲԵՐՈՒԹԻՒՆ։** Վճարն աւելանում է այնտեղ, ուր արդիւնաբերութիւնը զարգանում է, այսինքն՝ որտեղ պահանջւում են աւելի ու աւելի բանւորներ։ Նա ընկնում է այնտեղ, որտեղ արդիւնաբերութիւնը պակասում է, այսինքն՝ որտեղ բանւորներն իրանց աշխատանք չեն գտնում։

**57. ԱՇԽԱՏԱՆՔԻ ՎԱՐՁԻ ՏԵՍԱԿՆԵՐԸ։** Վարձը կարող է տրուել—իրով (նատուրայով) և փողով։ Հին ժամանակները, երբ փողը քիչ էր, գրեթէ միշտ վճարը տրւում է իրով—բնակարա-

նով, վառելիքով, հացով և այլն։ Հիմայ էլ, թէպէտ և սակաւ, բայց դեռ էլի տալիս են բանւորին բնակարան և ուտելիք։ Վճարի այս ձևը կարող է ձեռնտու լինել. երբեմն նա կարող է շատ մեծացնել վճարը (օր., եթէ ծառայողին տրւում է վարուցանքի հող, առատութեան տարին նրա ռոճիկը կարող է շատ բարձրանալ)։ Սակայն նա երբեմն նեղն է գձում բանւորին։ Վերջինս, օր., կարող է ստանալ շատ հաց, երբ իրան հարկաւոր է, օր., գետնախնձոր (картофиль)։ Նրան աւելի յարմար է (հացը վաճառելու փոխարէն) վճարը դրամով ստանալ, որպէսզի գնէ իրան հարկաւոր բաները։ Դրամական վճարը լինում է 1) պարբերական, 2) հատի տակ և 3) օգուտից։ Առաջին տեսակի վճարի դէպքում բանւորն ստանում է որոշ ռոճիկ մի յայտնի ժամանակի համար.—օրական, շաբաթական, ամսական, տարեկան, պայմանաժամով (на срокъ)։

Վճարի այս եղանակով գործի տէրը ապահով է բոլոր պայմանաւորուած ժամանակի ընթացքում աշխատանքի կողմից. իսկ բանւորը—ռոճիկի կողմից։ Բայց այս յարմարութեան հետ կայ նաև անյարմարութիւն։

Բանւորը կարիք չունի առանձին ջանասիրութեամբ աշխատելու։ Նրա վարձը չի աւելանայ՝ աւելի արդիւնք տալուց։ Տէրն այս նախատեսնում է և դրա համար պարբերաբար (երկար ժամանակով վարձելիս) վճարում է պակաս։ Հատի տակ վճարելիս վարձը

բարձրանում է, որովհետև բանւորը բոլոր ջանքը գործ է դնում, որ արտադրէ աւելի և վաստակէ աւելի։ Բայց վարձատրութեան այս եղանակի վնասը կայանում է նրանում, որ այս դէպքում աշխատանքն շտապովի է, վատ է կատարուած, և ինքը բանւորն էլ յաճախ աշխատում է չափից դուրս, շռայլում է իր ոյժերը, ժամանակից առաջ ոյժից ընկնում է։ Երրորդ դէպքում բանւորն իր պարբերական կամ հատի տակ վարձատրութիւնից դուրս ստանում է նաև աւելորդ վճար, արտադրութեան զուտ արդիւնքի մի որոշ տօկոս։ Այստեղ բանւորը շահագրգռուած է իր արտադրած առարկաների, և՛ քանակով, և՛ որակով և այդ պատճառով այս եղանակը չունի այն անյարմարութիւնները, որ մենք տեսանք պարբերական և հատի տակ վարձատրութեան մէջ։

58. ԱՇԽԱՏԱՆՔԻ ՎԱՐՁԻ ՓՈՓՈԽՈՒԹԻՒՆՆԵՐԸ ԶԱՆԱԶԱՆ ՊԱՐԱՊՄՈՒՆՔՆԵՐԻ ՄԷՋ։ Յետոյ յիշենք, որ զանազան պարապմունքների մէջ աշխատանքի վարձը զանազան է լինում։ Նա փոփոխւում է հետևեալ պայմանների համեմատ. 1) Նա բարձր է—ծանր և անախորժ աշխատանքների մէջ, քան թեթև և հաճելի աշխատանքի մէջ։ Մսագործը յաճախ շատ է վարձատրւում իր դաժան և անախորժ պարապմունքի համար։ Ածխագործների աշխատանքը շատ աւելի լաւ է վարձատրւում ուրիշներից։ Այնտեղ, ուր աշխատանքը հակաառողջապահական է և անախորժ, վարձատրութիւնը միշտ բարձր է լինում։ Տանն աշխատելն աւելի յար-

մար է, հեշտ է, քան գործարանումը։ Այդ պատճառով տնայնագործը (кустарь) գերադասում է տանը քիչ վաստակել, քան գործարան գնալ, եթէ նա տանը մնալու հնարաւորութիւն ունի։ 2) Աշխատութեան վարձը բարձր է այն պարապմունքների մէջ, որոնք պահանջում են ուսուցում, քան նրանց մէջ, որոնք այդ չեն պահանջում։ Հովիւը երկրագործից քիչ է ստանում, իսկ երկրագործը—արհեստաւորից։

Հասկանալի է, որ անհրաժեշտ է հանել ժամանակը և ուսուցման ծախքերը։ 3) Վարձը պակաս է այն պարապմունքների մէջ, որտեղ միշտ կարելի է գործ գտնել, քան նրանց մէջ, որտեղ բանւորը երբեմն պէտք է անգործ մնայ։ Քարտաշն, օր., ձմեռը չի կարող աշխատել։ Պարզ է, որ ամառուայ վաստակով նա իր ընտանիքը պիտի կերակրէ նաև ձմեռը։ Նա ամառն աւելի պիտի ստանայ, քան եթէ նա ձմեռն էլ աշխատէր։

Ի վերջոյ, վարձը քիչ է այնտեղ, որտեղ որևէ պարապմունք տալիս է ոչ թէ գլխաւոր, այլ կողմնակի վաստակ։ Օր., եթէ երկրագործը ձմեռը պարապում է փականք շինելով, նա կարող է նրանց համար քիչ ստանալ, քան եթէ նա երկրագործութեամբ չպարապէր, որովհետև նա իր գլխաւոր վաստակն ստանում է երկրագործութիւնից և ոչ թէ նրանից։

# ԶՐՈՅՑ ՏԱՍՆՉՈՐՍԵՐՈՐԴ

## 4. *Հասոյթի, օգուտի եւ աշխատանքի վարձի փոփոխութիւնները:*

**59. ԵԿԱՄՈՒՏԻ ՄԱՍԵՐԻ ՓՈՓՈԽՈՒԵԼԸ։** *Մենք առանձին-առանձին քննեցինք այն օրէնքները, որոնցով կառավարւում են հասոյթը, օգուտը և աշխատանքի վարձը։ Մեզ մնում է միայն ասել, թէ ինչպէս նրանք փոփոխւում են ժամանակի ընթացքում։ Կեանքը մի տեղ կանգնած չէ մնում։ Նա անդադար առաջ է շարժւում, իսկ նրա հետ միասին փոփոխւում են և տնտեսական յարաբերութիւնները։ Փոփոխւում է և երկրի բոլոր եկամուտի մեծութիւնը, փոփոխւում են առանձնապէս և հասոյթի, և օգուտի, և աշխատանքի վարձի քանակութիւնը։*

**60. ՀԱՍՈՅԹԻ ՓՈՓՈԽՈՒԹԻՒՆԸ։** *Ամեն մարդ գիտէ, որ ժողովուրդը շարունակ աւելանում է։ Օր., Ռուսաստանում նա 65 տարուայ ընթացքում կրկնապատկւում է։ Ուրիշ երկրներում այդ ժամանակամիջոցն աւելի երկար է, բայց ամեն տեղ մարդիկ բազմանում են և պահանջում են աւելի ու աւելի ուտելիք։ Սկսում է մշակել նորանոր հողեր, բայց նրանք էլի քիչ են, սկսում են մտցնել նոր գործիքներ, բայց դանդաղ կերպով։ Նոր հողերը տալիս են նոր հաց, նոր գործիքները զօրեղացնում են հին հողերի*

բերրիութիւնը, և նրանք նոյնպէս տալիս են նոր հաց։ Ե՛ւ այս, և՛ այն ի հարկէ աւելացնում է հացի քանակութիւնը, որով մարդիկ օգտւում են և նա դրա համար երբեմն էժանանում է։ Բայց այս բոլորը մի առ ժամանակ։ Մարդիկ շարունակ բազմանում են հա բազմանում, պահանջում են աւելի ու աւելի հաց, սրա գինը շարունակ բարձրանում է հա բարձրանում։ Սկսում են վարել հողի ամեն մի փոքրիկ մասը։ Ամենավատ, անբարեբեր հողն էլ ենթարկւում է մշակութեան։ Ի հարկէ, այսպիսի հողի վրա ծախսեր էլ շատ են լինում։ Իսկ մենք գիտենք (49), որ հացի գինը չի կարող այդ ամենավատ հողերի վրա եղած ծախսերից պակաս լինել։ Հասկանալի է, որ գինն աստիճանաբար բարձրանում է։ Հետևաբար, հասոյթը ժամանակի ընթացքում աւելի ու աւելի բարձրանում է։ Օրինակ։ Երեք հողաբաժին կար՝ 100, 80 և 50 եկամուտով։ Մենք արդէն գիտենք, ինչպէս պէտք է հաշւել հասոյթը։ Նա հաւասար էր այս դէպքում 50+30=80։ Ասենք թէ վերցրինք էլի մի չորրորդ հողաբաժին 25 եկամուտով։ Ի՞նչ եղաւ հասոյթը։ Նա 80-ից բարձրացաւ 75+55+25=155։

61. ԱՇԽԱՏԱՆՔԻ ՎԱՐՁԻ ՓՈՓՈԽՈՒԵԼԸ։ Հացի այս մշտապէս թանկանալը ազդում է և աշխատանքի վարձի փոփոխութեան վրա։ Մենք գիտենք, որ իրական կամ շուկայի վարձը որոշւում է բնականով․ իսկ բնականը—այն առարկաների արժէքով, որոնք բաւարարութիւն են տալիս բանւորի և նրա ընտանիքի առաջնակարգ

կարիքներին։ Հետևաբար, եթէ հացը թանկանում է, աշխատանքի վարձն էլ պէտք է աւելանայ։ Իսկապէս միշտ այդպէս էլ լինում է։ Ժամանակաւոր կերպով նա կարող է ընկնել։ Բայց եթէ մենք քննենք նրա քանակութիւնը շատ տարիների, հարիւր տարուայ ընթացքում, մենք անպատճառ կը տեսնենք, որ բանուորն այժմ շատանում է աւելի, քան առաջ։ Եւ այդ ոչ թէ միայն մեզանում, այլ ամեն տեղ այդպէս է։ Սակայն ես դեռ բոլորը չեմ ասել։ Արդէն ասել եմ, որ առհասարակ ժողովուրդն արագ աճում է։ Ի հարկէ, նոյնպէս արագ աճում է և բանուորների թիւը։ Նրանց համար գործ գտնելը դառնում է աւելի ու աւելի դժուար։ Որպէս զի գործ ճարեն, սրանք իրանց աշխատանքի գինը պակասեցնում են մինչև այն չափը, երբ ներկայ հացի գներին նայելով, ապրել արդէն անկարելի է լինում։ Ահա թէ ինչու կարելի է նկատել, որ աշխատանքի վարձը թէպէտ և աւելանում է, բայց ոչ այնպէս արագ, ինչպէս հացի և առհասարակ բոլոր անհրաժեշտ արդիւնքների գինը։ Այս եղրակացութիւնն ստուգուած է զանազան երկրներում անթիւ փաստերով և ոչ մի կասկածի չի ենթարկւում։ Ուրիշ խօսքով, այս նշանակում է, որ բանուորն այժմ ստանում է աւելի, քան նրա նախորդները, բայց կարող է գնել իրան համար աւելի սակաւ արդիւնքներ, քան նրանք։

62. ՕԳՈՒՏԻ ՓՈՓՈԽՈՒԻԼԸ։ Աշխատանքի

վարձի աստիճանաբար բարձրանալը իր հերթին որոշում է օգուտի փոփոխումը։ Մենք գիտենք, որ անհրաժեշտ և յաւելեալ բանւորական ժամանակներն այնպիսի մեծութիւններ են, որոնք փոփոխւում են իրար հակառակ (հակառակ յարաբերական են). որքան մեծ է առաջինը, այնքան փոքր է երկրորդը և ընդհակառակը։ Եթէ աշխատանքի վարձը բարձրացաւ, կաւելանայ և անհրաժեշտ բանւորական ժամանակը։ Դուրս է գալիս, որ այս դէպքում յաւելեալ ժամանակը պակասում է։ Իսկ որովհետև յաւելեալ բանւորական ժամանակն է հէնց այն ժամանակը, երբ արտադրւում է օգուտը, ուստի աշխատանքի վարձի աւելանալուց պակասում է օգուտը։ Սրանումն է կայանում նրա մշտապէս և աստիճանաբար փոփոխումը ժամանակի ընթացքում. օգուտը շարունակ աւելի ու աւելի ընկնում է։ XVIII դարում Անգլիայում օգտի միջին թիւն հաւասար էր 8% (այսինքն՝ եթէ, օր., փոխառութիւն լինէր, պէտք է վճարէին 8%), Ֆրանսիայում—6% աւելի. այժմ—3% և պակաս։ Ռուսաստանում XVI դարում դրամագլխից ստացւում էր 20%, իսկ հիմայ օրինական («указный») տոկոսն հաւասար է 6%։ Սակայն սրանից չի հետևում, թէ արդիւնաբերողներն այժմ աւելի պակաս փող են ստանում, քան առաջ։ Դրամագլուխների քանակութիւնը ժամանակի ընթացքում աւելանում է։ Հասկանալի է, որ մեծ դրամագլխից ստացած փոքր տոկոսը կարող է մեծ լինել փոքր դրամագլխից

ստացած մեծ տոկոսից։ Մէկ միլիոն ռուբլին 3 % տոկոսով կբերէ 30.000 ռուբլ. իսկ 100.000 ր. 20 %-ով միայն 20.000 ր.։ Եթէ օգուտն էլ նորից մտցնում են շրջանառութեան մէջ, այն ժամանակ արդիւնաբերութիւնն աւելի հեշտութեամբ կարող է զարգանալ առաջին դէպքում, քան երկրորդում։

Ահա սրանք են ընդհանուր եզրակացութիւնները, որոնք վերաբերում են եկամուտի մասերի փոփոխուելուն ժամանակի ընթացքում («պատմութեան մէջ»)։ Սրանով մենք կարող ենք վերջացնել մեր առարկայի երկրորդ բաժինը և անցնել փոխանակութեանը։

## ՉՐՈՅՑ ՏԱՍՆՀԻՆԳԵՐՈՐԴ

### Գ. Փոխանակութիւն

**63. ՆԱՀԱՊԵՏԱԿԱՆ ԵՒ ՓՈԽԱՆԱԿՈՒԹԵԱՆ (ԱՌԵՒՏՐԱԿԱՆ) ՏՆՏԵՍՈՒԹԻՒՆ։ Ի՞ՆՉ Է ԱՊՐԱՆՔԸ։** Արդէն գիտենք, որ առաջ, հին ժամանակները առևտուրն այնպէս ընդարձակ զարգացած չէր, ինչպէս հիմայ։ Մարդիկ քիչ էին փոխանակում իրար հետ իրանց աշխատանքի արտադրութիւնները և մեծ մասամբ իրանց անհրաժեշտ ամեն բան պատրաստում էին իրանք։ Օր., կանայք իրանք աղում էին հացահատիկները տանու երկանով, գործում էին կտորներ, ամբողջ ընտանիքի համար շոր էին կարում և այլն։ Բայց մենք արդէն ասել ենք, որ մարդիկ

վաղուց հասկացան այս կարգի ձեռնտու չըլինելը։

Արդէն գիտենք, ինչ օգուտ է բերում մարդուս՝ սրա տնտեսական գործունէութեան մէջ աշխատանքի բարդ համախմբումը։ Եթէ ես միևնոյն ժամանակ և՛ ինձ համար հագուստ եմ կարում, և՛ դաշտումն աշխատում եմ, և՛ կօշիկ եմ կարում, և՛ ալիւր եմ աղում, և՛ կարասիք եմ շինում և այլն, հաւանական է, որ կօշիկը կարեմ կօշկակարից վատ, կարասիք շինեմ կահագործից վատ, գութանը կառավարեմ երկրագործից վատ և այլն։ Ամեն բան անել գիտենալն անկարելի է։ Այս մէկ։ Երկրորդ, ամեն ինձ հարկաւոր բան ես չեմ կարող գտնել ձեռքիս տակ։ Ռուսաստանում, օր., թէյի տունկ չի բռնում, և ուստի ես ինքս ինձ համար թէյ պատրաստել չեմ կարող. հիւսիսում ցորենը չի աճում—այնտեղ ուրեմն մարդիկ այս կարգի հետ հաշտուելով՝ պէտք է մնան առանց ցորեն—հացի, և այլն։ Այս պատճառներով մարդիկ նիւթական կարիքներին բաւարարութիւն տալու այս եղանակը թողին։ Սկսեցին այնպէս անել, որ ամեն մարդ պարապի միայն մի գործով, որը նա լաւ գիտէ և որը նրան յարմար է բնական պայմաններին նայելով։ Եւ իրաքանչիւրն արտադրել սկսեց ոչ միայն իրան համար, այլ այն հաշւով, որ իր արդիւնքները կարելի լինի ծախել, այսինքն փող ստանալ և դրանով գնել այն, ինչ որ նրան հարկաւոր է։

Հետևաբար մարդիկ սկսեցին փոխանակել

իրանց արդիւնքները—և նախկին «նահապետական» տնտեսութեանը փոխարինեց այժմեան «առևտրականը»։ Վաճառելու նշանակուած արդիւնքներն սկսեցին անուանուել ապրանք։ Սրա համեմատ ապրանք չի համարուի մի զոյգ կօշիկ, որ կօշկակարը պատրաստել է իրան համար, այլ միայն այն, որ նա մտադիր է ծախելու։ Ամեն մէկն սկսեց արտադրել միայն մի տեսակ ապրանք, ծախել այն և յետոյ արդէն փնտրել շուկայում այն ապրանքը, որն իրան հարկաւոր է իր կարիքներին բաւարարութիւն տալու համար, որը նա ուզում է գնել։

Հիմա մենք կծանօթանանք, թէ մարդկանց մէջ ինչպէս է կատարւում փոխանակութիւնը (առևտուրը)։

## 1. Արժէք.

64. **Ի՞ՆՉ Է ԱՐԺԷՔԸ։** Իւրաքանչիւր առարկայ, որ պիտանի է մարդուս, օգտակար է նրան,—ունի օգտակարութիւն, կամ այլ կերպ—ունի սպառողական արժէք*)։ Ինձ հարկաւոր է թանաքաման, երկրագործին—գութան, ամենքին—արևի լոյսը, ջուր, օդ.—այս բոլորը օգտակար են, նշանակում է—ունին օգտակարութիւն (սպառողական արժէք)։

---

*) Այսինքն՝ գործածելիս կամ սպառելիս արժէք ունի։

Ցեառոյ. արդիւնքների այն քանակութիւնը, որ տալիս են որև է իրի փոխարէն փոխանակութեան մէջ, կոչւում է, փոխանակութեան արժէք կամ ուղղակի արժէք։ Վերջապէս դրամի այն քանակութիւնը, որ ստացւում է իրի փոխարէն, կոչւում է գին։ Այսպէս ուրեմն, եթէ սեղանի փոխարէն ստացուած է 20 արշին քաթան, այն ժամանակ 20 արշին քաթանը կլինի սեղանի արժէքը, իսկ սեղանը կլինի 20 արշին քաթանի արժէքը։ Եթէ սեղանի փոխարէն ստացուած է 6 ռ., սեղանի գինն է 6 ռ.։ Եթէ քաթանի արշինը արժէ 30 կոպ., 20 արշին քաթանի գինը (6 ռ.) միևնոյն ժամանակ հաւասար է (ինչպէս այս օրինակի մէջ) դրամի միևնոյն քանակութեան, այն ժամամակ մենք ասում ենք, որ նրանց արժէքը միևնոյն է, որ նրանք համարժէք են։ Ստորև մենք կըտեսնենք (75), որ գինը և արժէքը միևնոյն բանը չէ, ինչպէս կարող է թուալ առաջին հայեացքից։

**65. ՍՊԱՌՈՂԱԿԱՆ ԵՒ ՓՈԽԱՆԱԿՈՒԹԵԱՆ ԱՐԺԷՔԻ ՓՈԽԱԴԱՐՁ ՅԱՐԱԲԵՐՈՒԹԻՒՆԸ։** Կարող է փոխանակութեան (առևտրական) արժէք ունենալ մի իր, որ ոչ մի բանի պիտանի չէ (այսինքն՝ սպառողական արժէք չունի)։ Ի հարկէ, ո՛չ։ Ինչո՞ւ պիտի գնեմ մի իր, ինչո՞ւ պիտի նրան փող, կամ ուրիշ արդիւնք տամ, եթէ նա ինձ պէտք չէ։ Մի անգամ արաբը (ինչպէս պատմում է մի պատմիչ) անապատում գտաւ մի արկղ մարգարիտ։ Նա նրան ընդունեց բրնձի տեղ և սկսեց եփել. բայց

երբ տեսաւ իր սխալը, պարզ ի պարզոյ դէն շպրտեց մարգարիտը։ Եւրոպայում մարգարիտը, որ գործածւում է իբրև զարդարանք, և, հետևաբար, ունի սպառողական արժէք, ունի նաև ահագին առևտրական արժէք։ Արաբին նա պէտք չէր, և նա դէն գձեց։ Նշանակում է, սպառողական արժէք չունեցող իրը չի կարող նաև փոխանակութեան (առևտրական) արժէք ունենալ։ Եթէ մէկը որևէ իրի փոխարէն մի բան տալիս է, նշանակում է այդ իրը գնողին որևէ բանի համար պիտանի է։ Մինչև անգամ պատահում է այսպէս, որ առարկան բացի մէկից ոչոքի պէտք չէ. իսկ այդ մարդը պատրաստ է շատ բան տալ դրա փոխարէն։ Օր., մէկը յիշատակ է ստացել մի պատկեր, մի նուէր և այլն, մի խօսքով մի բան, որը թանկագին է միայն այն մարդու համար, որ նրա հետ կապուած յիշողութիւններ ունի։ Այս դէպքում իրը թէպէտ սպառողական արժէք չունի ուրիշների համար, բայց այս մարդու համար ունի և միայն այդ պատճառով նրա համար էլ ունի փոխանակութեան արժէք։

66. ԱՐԺԷՔՆԵՐԻ ՉԱՓԸ։ Բայց սպառողական արժէք ունեցող ամէ՛ն իր ունի նաև փոխանակութեան արժէք։ Ամէ՛ն օգտակար առարկայի փոխարէն կարելի է մի բան ստանալ։ Ձեր շուրջը նայեցէք. կըտեսնէք, որ ոչ ամենի։ Ի՞նչը կարող է ջրից, օդից և արևի լոյսից օգտակար լինել։ Առանց դրանց մարդը ապրել էլ չի կարող։ Այդ բոլորից օգտուելու համար որևէ բան

վճարո՞ւմ ենք։ Ո՛չ։ Ինչո՞ւ։ Ահա մենք մօտեցանք խնդրին, թէ որտեղից է ծագում ապրանքների փոխանակութեան (առևտրական) արժէքը․ ի՞նչ-պէս որոշենք այս։

Սա չի կարող որոշուել առարկայի օգտակարութեամբ։ Օդն ու ջուրն օգտակար են, բայց փոխանակութեան արժէք չունին։ Հացը միշտ միակերպ պէտք է մարդուն։ Երբէք չէ եղել մի ժամանակ, երբ հացը մարդուն աւելի պակաս պէտք լինէր, քան հիմայ։ Այնուամենայնիւ նա շարունակ թանկանում է։ Երկաթը աւելի և աւելի պիտանի է դառնում մարդկանց, որովհետև շարունակ աւելի ու աւելի են շինում մեքենաներ և գործիքներ, որոնք առաջ յայտնի չէին։ Այն ինչ երկաթը չի թանկանում, այլ էժանանում է։ Ինչո՞ւմն է պատճառը։ Ուշք դարձնենք այսպիսի մի հանգամանքի վրա․ սովորաբար մարդիկ ջրին ոչինչ չեն տալիս․ իսկ քաղաքում ջրկիրն ստանում է մի որոշ գումար իւրաքանչիւր դոյլի (վեդրօ) համար։ Ինչո՞ւ համար է ստանում։ Ի հարկէ, ո՛չ ջրի, այլ այն աշխատանքի համար, որ նա յանձն է առնում—ջուրը լցնելու, բերելու և դատարկելու համար։ Ենթադրենք թէ ինձ հարկաւոր է ծովի յատակն իջնել ջրասոյզ զանգակի մէջ։ Ի հարկէ, ես պարտաւոր կըլինէի վճարել այն օդի համար, որով ես պէտք է շունչ քաշէի այդ զանգակի մէջ, այսինքն՝ օդը ներս մղելու աշխատանքի համար։ Ի՞նչից է թանկանում հացը։ Նրանից, որ հողերն ուժասպառ են լինում և աւելի քիչ են

արտադրում, երկիրը մշակելը դառնում է աւելի ու աւելի դժուար։ Ինչու է էժանանում երկաթը։ Նրա համար, որ գտնում են նորանոր երկաթի հանքեր, նրա համար, որ աւելի քիչ աշխատանք է հարկաւոր լինում գործ դնել նրան ձեռք բերելու համար։

Ո՞րտեղից է ծագում իրերի արժէքը, և ինչով է նա որոշւում։ Պարզ է. միայն այն աշխատանքով, որ գործադրւում է նրանց արտադրութան համար։ Աշխատանքն աւելի է—առարկայի արժէքն էլ բարձր է։ Աշխատանքը պակաս է—արժէքն էլ ցած է։

Այսպէս ուրեմն. 1) Փոխանակութեան արժէք ունի միայն այն, ինչ որ ունի սպառողական արժէք. 2) Բայց ոչ բոլոր սպառողական արժէք ունեցողները ունենում են անպատճառ և փոխանակութեան արժէք. 3) Սպառողական արժէք ունեցող առարկան ստանում է փոխանակութեան արժէք միայն այն դէպքում, եթէ նրան ձեռք բերելու համար գործադրուած է աշխատանք, և որքան շատ աշխատանք, այնքան բարձր արժէք և ընդհակառակը։

## ԶՐՈՅՑ ՏԱՍՆՎԵՑԵՐՈՐԴ

**67. ԲԱՆՒՈՐԱԿԱՆ ՕՐՆ ԻՐԵՐԻ ԱՐԺԷՔԻ ՉԱՓ։** Այսպէս ուրեմն բոլոր առարկաներն ունին

փոխանակութեան արժէք միայն այն դէպքում, եթէ նրանց ձեռք բերելու համար գործ է դրուած աշխատանք։ Հետևաբար, համարժէք իրեր կոչւում են այնպիսիները, որոնց վրա գործ է դրուած աշխատանքի հաւասար քանակութիւն։ Եթէ 1 սեղանը=20 արշին քաթանի=1 զոյգ կօշիկի=3 լամպի և այլն, այս նշանակում է, որ սեղանի արտադրութեան վրա գործածուած է նոյնքան աշխատանք, որքան և 20 արշին քաթանի վրա, որքան և մէկ զոյգ կօշիկի, 3 լամպի վրա և այլն։ Ի՞նչպէս չափենք աշխատանքի այդ քանակութիւնը։ Արդէն գիտենք, որ այդ չափելու համար իբրև միաւոր ծառայում է բանուորական օրը, այսինքն՝ ժամերի այն թիւը, որ բանուորն օրական գործ է դնում աշխատանքի վրա։ Եթէ բոլոր յիշեալ առարկաների արժէքը հաւասար է, և եթէ մի այդպիսի սեղանի արտադրութիւն պահանջում է 20 բանուորական ժամ, կամ 2 բանուորական օր, հետևաբար բանուորական օրերի նոյնպիսի քանակութիւն գործադրուած է նաև 20 արշ. քաթանի, մի զոյգ կօշիկի և 3 լամպի արտադրութեան վրա և այլն։

68. ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ—ԱՆՀՐԱԺԵՇՏ ԲԱՆՒՈՐԱԿԱՆ ԺԱՄԱՆԱԿ։ Նշանակում է, այն իրը, որի արտադրութեան վրա գործադրել են բանուորական 10 օր, ունի փոխանակութեան կրկնակի մեծ արժէք, քան այն, որի վրա ծախսուած է 5. և ընդհակառակը և այլն։ Սակայն ուշք դարձնենք հետևեալ հանգամանքի վրա։ Միևնոյն առարկան, բանուորի ճարպիկութեանը նայելով՝ կարելի է

շինել արագ կամ դանդաղ։ Լաւ վարպետը շատ լաւ իրերը շինում է աւելի շուտ, քան վատը— աւելի վատերը։ Ուստի յիշած կանոնի հիման վրա՝ աւելի վատ իրերը պէտք է աւելի թանկ գնահատուին լաւերից, եթէ նրանց վրա աւելի ժամանակ է գործադրուած։ Սա անարդար բան կըլինէր և երբէք այսպիսի բան չի պատահում։ Արժէր միայն աւելի դանդաղ աշխատել՝ աւելի փող վաստակելու համար։ Ահա թէ ինչու աստծիս հարկաւոր է աւելացնել հետևեալը։ Առարկայի արտադրութեան վրա գործած ժամանակի ոչ ամեն քանակութիւն կարող է որոշել փոխանակութեան արժէքը, այլ միայն այն, որ անհրաժեշտ հարկաւոր է գործադրել նրա վրա աշխատանքի գոյութիւն ունեցող եղանակներով։ Վերցնում են միայն այն միջին ժամանակը, որը սովորաբար գործածում են այդ արտադրութեան վրա։ Այդ միջին ժամանակը կոչւում է հասարակական—անհրաժեշտ բանւորական ժամանակ։ Ասենք թէ որևէ տեղ, ուր չկայ ոստայնակի մեքենայ, քաթանը ձեռքով են գործում և օրական պատրաստում են, օր., 3 արշին։ Հետևաբար, մէկ արշինի դինը հաւասար կըլինի բանւորական օրուայ 1/3-ին, և, հետևաբար, այդ ժամանակն է հասարակական— անհրաժեշտ բանւորական ժամանակը մի արշ. քաթանի համար։ Ասենք թէ այնտեղ մտցրին մի մեքենայ, որ օրական 30 արշ. քաթան է տալիս։

Այժմ մի արշին քաթանի հասարակական—անհրաժեշտ բանուորական ժամանակը կըդառնայ բանուորական օրուայ 1/30-ը։ Եւ ձեռքով աշխատող բոլոր ոստայնագործները պարտաւորուած կըլինին իրանց քաթանը ծախելու 10 անգամ արժան, եթէ ուզում են իրանց ապրանքը ծախել, թէպէտ և նա նրանց 10 անգամ թանկ է նստում։ Այստեղից հասկանալի է, որ մեքենաների մտցնելովը հասարակական—անհրաժեշտ բանուորական ժամանակը, սրա հետ և առարկաների արժէքը, կրճատւում են։

69. ԲՆԱԿԱՆ ԵՒ ՇՈՒԿԱՅԻ ԳԻՆԸ (ԽԸՆԴՐԱՆՔ ԵՒ ԱՌԱՋԱՐԿ)։ Առարկայի այս արժէքը, որ կազմուած է նրա արտադրութեան վրա գործ դրուած աշխատանքից և որոշւում է հասարակական—անհրաժեշտ բանուորական ժամանակի քանակութեամբ, կոչւում է նրա բնական արժէքը։ Եթէ մի մեծ սեղան արտադրելու համար հարկաւոր է 40 բանուորական ժամ, և եթէ նոյնքան էլ հարկաւոր է մի գութան շինելու համար, այն ժամանակ սեղանը կըլինի այդ գութանի բնական արժէքը։ Շուկայում, այսինքն, կեանքի մէջ իրեր գնելիս՝ գնողն, ի հարկէ, չի հարցնում, քանի՞ բանուորական ժամ է ծախսուած՝ տուած առարկայի վրա, և որքան է գնահատւում բանուորական ժամը։ Նա սովորաբար տալիս է ապրանքին միջին գին, ի հարկէ, ցանկանալով, վճարել ըստ կարելոյն պակաս։ Վաճառողն էլ կարիք չունի ծախելիս իւրաքան-

չիւր առանձին դէպքում մտնելու այսպիսի հաշիւների մէջ.—Նա պարզ ի պարզոյ ցանկանում է, որքան կարելի է, աւելի ստանալ։ Առաջինն աւելացնում է, երկրորդը զիջումն է անում, նրանք «սակարկում են», առեւտուր են անում և, վերջապէս, որևէ միջին գնի վրա համաձայնում են։ Այս գինը, որի վրա նրանք համաձայնութիւն կայացրին, կոչւում է շուկայի։ Ինչո՞վ է նա որոշւում։ Շատ պարզ է։ Եթէ վաճառականոց բերել են 10 թեղելու գործիք, իսկ գնել ցանկացող կան 20 հոգի, իւրաքանչիւրը կըշտապի թանկ վճարել, միայն թէ գործիքը ձեռք ձգէ։ Սրանից գինը բարձրացաւ։ Իսկ եթէ բերել են 20 գործիք, իսկ գնել ցանկացողներն են ընդամենը 10 հոգի, հակառակն է պատահում։—Վաճառողներից ամեն մէկը կ՚աշխատի թէկուզ էժան գնով ծախել, միայն թէ իր ապրանքը սաղացնի։ Գինն իջաւ։ Առարկաների այն ամողջ քանակութիւնը, որ ցանականում են գնել, կոչւում է խնդրանք։ Առարկաների այն բոլոր քանակութիւնը, որ ցանկանում են ծախել, կոչւում է առաջարկ։ Եթէ առաջարկը շատ է խընդրանքից, գներն ընկնում են, եթէ խնդրանքը շատ է առաջարկից, գները բարձրանում են։ Եւ որովհետև խնդրանքի և առաջարկի քանակութիւնն ամեն րոպէ տարբեր է, շուկայի գներն էլ շարունակ տատանւում են։ Ենթադրենք թէ, օր., գութանի առաջարկը երկար ժամանակ խնդրանքից բարձր է։ Գներն աւելի ու աւելի

կընկնին։ Ասենք թէ նրանք գութանի բնական արժէքից էլ ցած ընկան։ Ի՞նչ դուրս կըգայ սրանից։ Գութաններն իրանց արտադրութեան ծախքը չեն հանիլ, վնասով կըծախուին։ Գութան շինելը ձեռնտու չի լինիլ և այդ պատճառով առաջարկը վերջ ի վերջոյ կըկրճատուի։ Ասենք թէ նա այնքան կրճատուեց, որ խնդրանքից պակաս եղաւ։ Այն ժամանակ շուկայի գինը նորից կըսկսի բարձրանալ։ Ենթադրենք թէ նա բնական արժէքից անցաւ։ Այս արտադրութիւնն, հետևաբար ուրիշներից ձեռնտու կըլինի, նրանով կըսկսեն պարապել առաջուանից աւելի. Նորից առաջարկը կաւելանայ, նորից խնդրանքից կանցնի, և հետևաբար, շուկայի գինը նորից կընկնի և կըհասնի բնականին և այլն։ Այսպիսով շուկայի գինը տատանւում է ոչ այլ կերպ, քան բնականի շուրջը, առժամանակ մերթ բարձրանալով և մերթ իջնելով այդ միջին մեծութիւնից։ Այս վերջին մեծութիւնն, ինչպէս գիտենք, որոշւում է աշխատանքով, իսկ առաջինը (շուկայի գինը)— խնդրանքով և առաջարկով։ Այս երեք հիմնական պայմաններից կախուած է ամեն առարկայի գինը։

70. ԲԱՑԱՌՈՒԹԻՒՆՆԵՐ։ Ի հարկէ, մանր առևտրի մէջ շատ յաճախ գինը չըգիտենալուց կամ սակարկել չուզենալուց . կամ ուրիշ պատճառներից առարկան երբեմն գնւում է անհամեմատ թանկ կամ անհամեմատ էժան։ Սակայն խոշոր դումարածախսի գները ենթարկւում են յիշուած

կանոններին և բացի այդ որոշում են նաև հատածախսի գները։

Սակայն կայ մի այնպիսի ընդհանուր դէպք, երբ այդ կանոններից ոչ մէկը չի գործադրւում։ Այդ լինում է, երբ որևէ ապրանքի առևտուրն ազատ չէ, այլ տրուած է բացառապէս մէկ մարդու կամ երբ կառավարութիւնն իրան է վերապահել («МОНОПОЛІЯ»—մենավաճառ)։ Այսպէս հին ժամանակները մեզանում ոչ ոք չէր կարող օղի վաճառել, բացի նրանցից, որոնք վերցրել էին այդ առևտուրը կապալով։ Այդպէս հիմայ էլ Եւրոպայի մի քանի տէրութիւնների մէջ ոչոքից չի կարելի ծխախոտ գնել, բացի գանձարանից։ Պարզ է, որ այս դէպքում մենավաճառի տէրը (մոնօպոլիստը) կարիք չունի զիջելու. ոչոք չի կարող նրա գները վար գցել. միշտ գնողներ կըլինին։ Դրա համար էլ այս դէպքում ապրանքները ծախւում են շատ բարձր գներով ի վնաս գնողների և յօգուտ վաճառողների։ Այս և քանի մի ուրիշ բացառիկ դէպքերից դուրս՝ ապրանքների արժէքը ընդհանուր գծերով որոշւում է յիշեալ կանոններով, որոնք պարտաւորեցուցիչ են ամեն տեսակ ազատ առևտրի համար։

## ԶՐՈՅՑ ՏԱՍՆԵՕԹՆԵՐՈՐԴ

### 2. Դրամ (փող).

**71. ՓՈԽԱՆԱԿՈՒԹԵԱՆ ԱՆՅԱՐՄԱՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ**։ Մի րոպէ երևակայեցէք, թէ փող բոլորո-

վին չըկայ։ Ենթադրենք՝ թէ ես դարբին եմ։ Պատրաստել եմ մի սայլակ, ուզում եմ ծախել և ստացած փողով հաց գնել։ Ի՞նչպէս ես այդ բանն անեմ առանց փողի։ Ինձ հարկաւոր է սայլակը փոխել հացի հետ։ Գնում եմ երկրագործի մօտ և խնդրում եմ ինձ հաց տալ սայլակի փոխարէն։ Իսկ ի՞նչ անեմ, եթէ սայլակը նրան պէտք չէ և նա ինձ մերժում է։ Կըգնամ մի ուրիշի մօտ, նոյն բանի մասին սրան էլ կըխնդրեմ և երկար պէտք է մանգամ, մինչև գտնեմ մէկին, որը համաձայնի հացը փոխել սայլակիս հետ։ Իսկ եթէ ես ապրում եմ, օր., Մոսկվայի նահանգում, որտեղ հաց չեն ծախում, այլ իրանք են գնում։ Ի՞նչ անեմ իմ սայլակը։ Ես պէտք է նրան ուղարկեմ, օր., Եկատերինօսլաւի նահանգը և այնտեղից հաց ստանում։ Բայց լաւ, որ սայլակս չի փչանայ մինչև հաց գտնելս։ Իսկ եթէ ես մսագործ լինիմ, և եթէ իմ միսը փչանայ մինչև հաց գտնելս, այն ժամանակ ես ի՞նչ անեմ այդ միսը։ Եւ ի՞նչպէս ստանամ, վերջապէս, այն հացը, որ ինձ հարկաւոր է, առանց որի ես ապրել չեմ կարող և որի համար աշխատում եմ։ Ի հարկէ, դժուար է ճարելը։ Դեռ ուրիշ շատ անյարմարութիւններ է ներկայացնում փոխանակութիւնը, երբ փոխում են ապրանքը ոչ թէ դրամի, այլ որևէ ուրիշ առարկայի հետ. և միայն վայրենի ազգերը, որոնց կարիքները շատ պարզ են, որոնք շատ քիչ ապրանք ունին, իսկ փող չունին, միայն նրանք են վարում այսպիսի առևտուր։

72. ՓՈՂԻ ԴԵՐԸ։ Ուրիշ բան է, երբ փողը կայ։ Մարդիկ շատ վաղուց հասկացան, որ ամենից յարմար է ամեն ապրանք փոխել մի որևէ ապրանքի հետ։ Եթէ ամեն բան փոխւում է այդ ապրանքի հետ, նշանակում է նրանով էլ կարելի է ձեռք բերել ամեն բան. և, հետևաբար, նա բոլորին պէտք է։ Այսպիսի ապրանքի դեր է կատարում փողը։ Փողի գործածութիւնը մտցնելուց յետոյ ինձ—դարբնիս—հարկաւոր չէ այլ ևս որոնել այնպիսի երկրագործի կամ հացավաճառի, որին հարկաւոր լինի սայլակը։ Ես ծախում եմ սայլակս նրան, ում նա հարկաւոր է։ Եւ նրանից ստանում եմ փող, որով կարող եմ գնել ինձ համար ամեն բան, ինչ որ ցանկանում եմ։ Փոխանակութիւնը և ամեն տեսակ վճարումները շատ պարզ են դրամով։ Այս մէկ։ Երկրորդ, փողը պահպանում է (խնայում է) արժողութիւնները։ Ամեն արդիւնք երկար ժամանակ պառկած մնալով՝ փչանում է։ Կան ապրանքներ, որոնք շատ շուտ փչանում են։ Այդպիսիների թւին պատկանում են ուտեստները։ Նրանց երկար ժամանակ պահելու համար չի կարելի պատրաստել։ Եթէ կաթնավաճառի բոլոր օրական կարիքները բաւարարութիւն են ստանում հացի, մսի և այլ բաների այն քանակութեամբ, որը համարժէք է մի դոյլ կաթին, նա էլ իր արտադրութիւնը կըյարմարեցնէ այն բանին, որ օրական ստանայ հէնց մի դոյլ կաթ, հակառակ դէպքում նա կստանայ հացի, մսի և ուրիշ բաների կրկնակի քանակու-

թիւն, որ հարկ կըլլինէր պահել։ Յետոյ ի՞նչ պիտի անէր տէրութիւնը, եթէ հպատակների հարկերը ժողովէին այն արդիւնքներով, որոնց նրանք արտադրում են։ Ի՞նչպէս նա պիտի կարողանար պահպանել այդ բազմաթիւ արդիւնքները։ Փողը հեշտացնում է այդ պահպանութիւնը։ Կաթնավճառը ծախում է իր կովի տուած բոլոր կաթը։ Հաց, միս և այլն գնելուց յետոյ մնացած փողը չի փչանայ։ Տէրութիւնը կարիք չունի արդիւնքները պահպանելու, որովհետև հարկերն հաւաքում է փողով, որ փչանալու չի ենթարկւում։ Հետևաբար. արժէքները չեն փչանում, պահպանւում են նրանով որ նրանց փոխարինում է փողը։

73. ՓՈՂԻ ՏԵՍԱԿՆԵՐԸ։ Սրանք են փողի գլխաւոր յարմարութիւնները։ Այս և ուրիշ պատճառներով բոլոր ազգերը կամաց-կամաց սահմանեցին իրանց համար այն միջին ապրանքը, որին սկսեցին անուանել փող։ Սովորաբար փողի դեր կատարում էր այն ապրանքը, որից ազգն ունէր ամենից շատ։ Որսորդ ցեղերի մէջ փողի դեր կատարում են կենդանիների մորթիները։ Թափառականների մէջ—ընտանի կենդանիները, մի քանի տեղերում—աղը. Աֆրիկայի մի քանի ծովեզրեայ նեգրական ցեղերի մէջ—ծովային խեցիներ և այլն։ Սակայն այդ բոլոր *փողերը* կամաց-կամաց փոխարինուեցին *մետաղներով*։ Կաշու, անասունների փոխարէն սկսեցին գործածել այդ նպատակով երկաթ, պղինձ, անագ և այլն, նախ և առաջ, նրա համար, որ մե-

տաղները հեշտ է պահելը, և երկրորդ, նրա համար, որ նրանց կարելի է բաժանել ամեն տեսակ մանր մասերի։ Օր. աղ գնելու ցանկութիւն ունեցող մէկը, եթէ անասունից զատ ոչինչ չունէր, պէտք է գնէր նրանից մի ամբողջ եզի կամ ոչխարի արժողութեամբ։ Հազիւ թէ յաջողուէր նրան աւելի պակաս քանակութեամբ գնել, որովհետև այն, ինչ որ նա տալիս էր աղի փոխարէն, առանց կորուստի չէր կարող բաժանուել մասերի։ Պարզ է, որ այդ անյարմարութիւնից կարելի էր խուսափել մետաղական դրամ մտցնելով։ Մետաղները պահելու դիւրութիւնը և նրանց բաժանականութիւնը (ДѢЛИМОСТЬ)—ահա նրանց այն յատկութիւնները, որոնց շնորհիւ նրանց սկսեցին գերադասելով գործ ածել իբրև փող։ Վերջապէս, բոլոր մետաղները տեղի տուին «ազնիւ մետաղներին»—ոսկուն և արծաթին, որովհետև սրանք՝ բացի յիշեալ յարմարութիւններից, ունին էլի մէկ շատ կարևորը—նրանք շատ արժէք ունին իրանց քիչ քանակութեամբ։ Հնգանոց ոսկին, որ արժէ հինգ րուբլի, մի քիչ մեծ է քսան կոպէկանոցից. բայց ո՜րքան երկաթ կըգայ այդ գումարին։—Համարեա 2 փութ։ Աշկարայ է, թէ որքան յարմար է ստանալ ոսկեայ փոքրիկ դրամը երկաթի այդ ահագին քանակութեան փոխարէն։ Երրորդ «ազնիւ» մետաղը—լուսնոսկիա (պլատին)—երկրագնդիս վրա գըտնւում է շատ քիչ քանակութեամբ և ուստի չի կարող գործ ածուել նրանից դրամ ձուլելու հա-

մար։ Թանկագին քարերը թէպէտ և նոյնպէս շատ թանկ արժեն, բայց չեն կարող այնպէս հեշտութեամբ մասերի բաժանուել և դիւրութեամբ կարող են կեղծել։ Այս բոլոր պատուհաններով այժմ բոլոր բարեկիրթ ազգերի մէջ ոսկին ու արծաթն ընդունուած են իբրև միակ նիւթ, որից պատրաստուում է դրամ։ Միայն մանր, շատ քիչ քանակութեամբ վճարումների մէջ նրանց իբր օժանդակ ծառայում է պղինձը։

## ԶՐՈՅՑ ՏԱՍՆՈՒԹԵՐՈՐԴ

74. ՓՈՂԸ—ԱՊՐԱՆՔ։ Մենք նոր իմացանք, որ զանազան պատճառներով, փոխանակութեան զարգացման հետ մարդիկ եկան այն մտքին, թէ անհրաժեշտ է փողի գործածութիւնը մտցնելը, այսինքն՝ ապրանքն ուղղակի ապրանքի հետ չփոխել, այլ ապրանքն առաջ փոխել փողի հետ և յետոյ փողը նորից ապրանքի հետ։ Ի՞նչ քանակութիւններով փողը փոխուում է ապրանքի հետ։ Ի՞նչպէս որոշենք, որքան ոսկի կամ արծաթ պէտք է տալ կամ ստանալ ծախած կամ գնած ապրանքի համար։ Ուրիշ խօսքով, ի՞նչպէս որոշենք փողի գինը։ Մենք գիտենք, ինչպէս են գնահատուում ապրանքները. իսկ ի՞նչպէս է գնահատուում փողը։

Այս հարցի պատասխանը խիստ պարզ է. նա գնահատուում է նոյն կանոններով, ինչպէս և ամեն մի ուրիշ ապրանք։ Եւ ահա թէ ինչու։ Ի հարկէ, յայտնի է, որ ոսկին ու արծաթը

միայն դրամի համար չեն ծառայում։ Նրանցից շինում են զանազան իրեր։ Ենթադրենք մի րոպէ, թէ դրամի մէջ եղած ոսկին ու արծաթը որևէ պատճառով աւելի էժանացան, քան իրերի մէջ եղածները, այսինքն՝ որ, օր․, որևէ արծաթէ գդալ կրկնակի թանկ է գնահատւում, քան մի քանի արծաթէ դրամ նոյն կշիռով։ Եթէ ես արծաթ դրամ ունիմ, ինձ համար, հետևաբար, ձեռնտու կըլինի նրանց հալել և նրանցից գդալ ձուլել։ Այն գդալի համար ես կարող եմ աւելի ստանալ, քան դրամն էր։ Եւ դուրս կըգայ, որ դրամի քանակութիւնը կսկսէ պակասել, իսկ իրերի քանակութիւնն—աւելանալ։ Դրա համար արծաթ դրամի գինը կըսկսէ բարձրանալ, իսկ իրերինը—իջնել, և այդպէս կըլինի մինչև այն ժամանակ, երբ այլ ևս ձեռնտու չի լինիլ դրամը հալել և իրեր ձուլել, այսինքն՝ մինչև որ արծաթի գները դրամի և իրերի մէջ հաւասարուեն։ Ընդհակառակը, ասենք թէ իրերի վրա գործադրած ոսկի կամ արծաթը էժանանում է, դրամի վրա գործածածից։ Առաջ կըգան հակառակ երևոյթները։ Ովքեր ոսկեայ կամ արծաթեայ իրեր ունին ծախու, նրանց ձեռնտու կըլինի այդ իրերից դրամ կտրել։ Եթէ այդ հայրենիքում անկարելի լինի անել (որովհետև բացի կառավարութիւնից ոչոք իրաւունք չունի դրամ կտրելու), այդ կարելի է անել արտասահմանում։ Դրանից իրերի գինը կսկսի բարձրանալ, որովհետև նրանց թիւը կըպակասի, իսկ դրամի գինը—իջնել, որովհետև դրամը կըշատանայ։ Այս

դարձեալ կըշարունակուի մինչև այն ժամանակ, երբ ոսկու և արծաթի գները դրամի և իրերի մէջ կըհաւասարուեն։

Դուրս է գալիս, որ ոսկու և արծաթի արժէքը դրամի մէջ պէտք է միշտ այնպէս լինի, ինչպէս իրերի մէջ։ Իսկ որովհետև այդ մետաղների արժէքը իրերի մէջ որոշւում է, ի հարկէ, այնպէս, ինչպէս ամեն մի ուրիշ ապրանքի արժէքը, դրամի գինն էլ, հետևաբար, որոշւում է նոյն ճանապարհով։ Պարզ է, որ դրամը, փողը նոյնպիսի մի ապրանք է, ինչպէս միւս բոլոր ապրանքները, չընայելով որ նա ունի իր առանձին դերը։

75. ՓՈՂԻ ԲՆԱԿԱՆ ԵՒ ՇՈՒԿԱՅԻ ԳԻՆԸ. ԿՈՒՐՍ։ Դժուար չէ այնուհետև հասկանալ, որ, հետևաբար, դրամն ունի իր բնական և շուկայի գինը։ Նրա բնական գինն է նրան ձեռք բերելու արժէքը, այսինքն՝ աշխատանքի այն քանակութիւնը, որ գործ է դրուած ոսկին և արծաթն ստանալու և դրամ կտրելու վրա։ Շուկայի գինը կախուած է փողի խնդրանքի և առաջարկի փոխադարձ քանակութիւնից։ Եթէ որևէ պատճառով փող շատ է հարկաւոր, ամեն մէկը պատրաստ է մի րուբլու տալ աւելի արդիւնք (ապրանք), միայն թէ ստանայ այդ րուբլին, այսինքն՝ պատրաստ է իր ապրանքն էժան ծախել։ Եթէ երկաթավաճառին փող է հարկաւոր, նա մի րուբլու պատրաստ է տալու ոչ թէ 1/8 փութ, ինչպէս առաջ, այլ օր., 1/3 փութ, այսինքն՝ պատրաստ է

երկաթը ծախելու ոչ թէ փութը 3 րուբլու, այլ միայն 2 րուբլու. այսինքն՝ երկաթն էժանացաւ: Ընդհակառակը, փողը, պարզ է, որ թանկացաւ, առաջ մի րուբլու տալիս էին $^1/_3$, իսկ այժմ $^1/_2$ փութ: Հետևաբար, փողը թանկանում է, երբ ապրանքն էժանանում է: Փողն էժանանում է, երբ ապրանքը թանկանում է: Այսպէս ուրեմն, երբ բոլոր ապրանքներն էժանանում են, նշանակում է, փողի խնդրանքն աւելացել է, նշանակում է, նրա շուկայի գինը բարձրացել է: Ընդհակառակը, երբ բոլոր ապրանքները թանկանում են, նշանակում է, փողը էժանացել է, նշանակում է, նրանց խնդրանքը պակասել է,—նշանակում է, նրանց շուկայի գինը իջել է: Այժմ մենք կարող ենք հասկանալ, որ իրերի գինը (64) կարող է աւելանալ կամ պակասել այն ժամանակ, երբ նրանց արժէքը մնում է անփոփոխ և ընդհակառակը: Դրա համար միայն հարկաւոր է, որ (երբ անփոփոխ են արտադրութեան պայմանները) փողն էժանանայ կամ թանկանայ: Օրինակ: Ասենք թէ սեղանի գինը 12 ր. է. գութանի գինն էլ 12 ր. է: Հետևաբար, գութանը սեղանի արժէքն է և ընդհակառակը: Ասենք թէ փողն էժանացաւ իր գնի $^1/_4$-ի չափով: Ի՞նչ դուրս կըգայ: Ամեն մէկ իրի համար հարկ կըլինի վճարել $^1/_4$-ով աւելի, այսինքն՝ աւելի փող, քան առաջ: Սեղանին և գութանին պէտք է վճարել այժմ ոչ թէ 12-ական, այլ 15-ական րուբլի: Արդեօք նրանց արժէքը փոխուեց: Ո՛չ, նա

նոյնը մնայ։ Ինչպէս առաջ սեղանն ու գութանը հաւասար էին, օր․, 4 բանուորական օրուան, այնպէս էլ այժմ։ Ինչպէս առաջ նրանք իրար հետ համարժէք էին, արտայայտում էին միմեանց արժէքը, այնպէս էլ այժմ։ Իսկ նրանց գները, ինչպէս ցոյց տրուեց, փոխուեցին։ Նոյն բանը դուրս կըգար, եթէ փողը թանկանար իր գնի 1/4-ով։ Այժմ պարզ է, որ ապրանքների գների փոփոխութիւնն առաջ է գալիս ոչ միայն նրանց արժէքի փոփոխութիւնից, այլ և դրամի արժէքի փոփոխութիւնից։ Այս դէպքում կարող է ազդեցութիւն անել միայն առաջին պատճառը, կարող են անել երկուսն ևս, բայց յաճախ ազդում է միայն վերջինը։

Եթէ փողը փոխանակւում է փողով (օր․, օտար ազգերի դրամ գնելիս կամ դրամը թղթադրամի փոխարկելիս և ընդհակառակը), նրանց արժէքի տատանումները կոչւում են կուրս։ Եթէ, օր․, լրագրի այն բաժնում, որ կոչւում է «Բորսային քրոնիկ» մենք կարդում ենք—կէսիմպերիալը—8 ր․ 40 կ․, այս նշանակում է, որ թղթադրամի առատութեան շնորհիւ և ոսկեդրամի համեմատաբար քիչ քանակութիւնից, կէսիմպերիալի շուկայի գինը (կուրսը) 5 ր․ 15 կոպէկից բարձրացել է 8 ր․ 40 կոպէկ, կամ, որ միևնոյն է, թղթադրամի 1 րուբլու կուրսը ոսկով հաւասար է 61,3 կոպէկի։

76. ՓՈՂԻ ԱՌԱՋԱՐԿ ԵՒ ԽՆԴՐԱՆՔ։ Պարզ է, որ փողի առաջարկ կոչւում է նրա այն բոլոր քանակութիւնը, որ ամեն րոպէ շրջանա-

ռութեան մէջ է երկրում։ Իսկ ի՞նչ է փողի խնդրանքը։ Դա այն քանակութիւնն է, որ ամէն րոպէ հարկաւոր է երկրի մէջ։ Ինչո՞ւ համար հարկաւոր է փողը։ Այդ արդէն գիտենք։ Նախ և առաջ, փոխանակութիւնը դիւրացնելու, երկրորդ, զանազան վճարումներ կատարելու, երրորդ, արժէքները պահպանելու համար։

1) Ի հարկէ, առաջին նպատակի համար (իբրև «փոխանակութեան միջոց») երկրում ամէն րոպէ պէտք է լինի փողի այն գումարը, որին հասնում է երկրի մէջ փոխանակւող բոլոր ապրանքների արժէքը։ Եթէ ցորենի չետվերտը գնահատւում է 10 րուբլի, դժուար չէ հասկանալ, որ 100 չետվերտ գնելու համար հարկաւոր է 1000 ր.։ Եւ եթէ գումարենք բոլոր ապրանքների արժէքը, որ այս րոպէին Ռուսաստանում ցանկանում են ծախել, մենք կստանանք, որքան փող է հարկաւոր ունենալ այդ բանի համար կամ այս րոպէիս այդ նպատակի համար փողի ինչ խնդրանք կայ։ Բայց այդ այդպէս կըլինէր միայն այն դէպքում, եթէ իւրաքանչիւր մի րուբլին կարելի լինէր վճարել ապրանքի՝ ընդամենը մի անգամ։ Բայց հասկանալի է, որ միևնոյն րուբլին երկար ձեռքից ձեռք կանցնի նախ քան ոչընչանալը։ Նա փոխանակութեան ծառայում է շատ և շատ անգամ։ Հետևաբար, րուբլին որքան շատ անգամ ձեռքից ձեռք անցնի, այնքան արագ շրջանառութիւն կանի, այնքան պակաս փող է հարկաւոր երկրին։ Օրինակ վերցնենք։ Ասենք,

թէ ես մէկից մի փութ ալիւր գնեցի և մէկ ռուբլանոց տուի, այս մէկն էլ միւսից նոյն ռուբլանոցով 100 ձուկ գնեց և վերջապէս այս միւսն էլ երրորդից նոյն ռուբլանոցով մի կացին գնեց։ Դուրս է գալիս, որ մի ռուբլանոցով տրուած ժամանակում գնուած են—1) մի փութ ալիւր, 2) հարիւր ձուկ և 3) մի կացին. ընդամենը 3 ռուբլու գումարի. այսինքն մեր դրամը երեք անգամ շրջան գործեց։ Առհասարակ տասը հատ ռուբլանոց վճարի համար ինձ հարկաւոր է 10 ռ., եթէ ամեն մի ռուբլին օրական շրջան է կատարում ընդամենը մի անգամ, և հարկաւոր է ընդամենը 5 ռ., եթէ—2 անգամ և այլն։ Այս կանոնը աւելի հեշտ է միտը պահել այս ձևով.—

(49.000)—ապրանքն. գնի գում.
―――――――――――――――― = անհրաժեշտ դրամի քանակութ. (7000).
(7)—մի ռ. շրջանառութ. թիւը

Այսինքն՝ եթէ մենք բոլոր գնելի ապրանքների արժէքը բաժանենք իւրաքանչիւր դրամի շրջանառութեան թուի վրա, կըստանանք խնդրանքը, այսինքն՝ դրամի անհրաժեշտ քանակութիւնը։ Անցեալ դարում Ֆրանսիայում մի քաղաքի պաշարման ժամանակ բերդի հրամանատարը իւրաքանչիւր շաբաթ բնակիչներից փոխ էր առնում 7000 ֆլորին և վճարում էր զինւորների ռոճիկը։ Սրանք իրանց համար ուտեստ էին գնում, այսինքն՝ այդ 7000 ֆլորինը վերադարձնում էին բնակիչներին։ Բերդի հրամանատարը նորից փոխ էր առնում և այլն։ Եւ այսպէս անում էր նա 7 շա-

քաթ։ Հետևաբար նա վճարեց ընդամենը 49,000 ֆլորին, ամեն ֆլորին շրջան արեց եօթն անգամ. նրան հարկաւոր եղաւ ընդամենը 7000։

2) Երկրորդ նպատակի (վճարների) համար փողի խնդրանքն աւելանում է այն ժամանակ, երբ հարկաւոր է կատարել շատ վճարումներ։ Մեզանում վաճառականների մէջ սովորութիւն է վճարումների ժամանակը նշանակել մեծ տօնավաճառներին։ Այդ պայմանաժամերին, պարզ բան է, վաճառականներին ամենից շատ հարկաւոր է լինում փողը։ Անգլիայում փողի խնդրանքը խիստ շատ աւելանում է Աւետման տօնի մօտերքը, որովհետև այդ օրից յետոյ կապալառուների համար հասնում են կապալի և հարկերի վճարման պայմանաժամերը։

3) Երրորդ նպատակի (արժէքները պահպանելու) համար, խնդրանքն աւելանում է այն ժամանակ, երբ շատ ապրանք արտադրելը վտանգաւոր է լինում կամ ձեռնտու չէ լինում, երբ նրանց պահելը դժուար է, և դրա համար ամենքն աշխատում են շուտով սաղացնել իրանց արդիւնքները և պահել ստացած փողերը։ Այսպէս լինում է պատերազմների, խռովութիւնների, անկարգութիւնների ժամանակ։ Ահա ինչու մեր նախնիքները յաճախ դրամը հորում էին գետնի մէջ և ոչ թէ դնում շրջանառութեան մէջ։ Նախկին խռովութիւնների շնորհիւ է, որ մենք այժմ երկրի մէջ գանձ (кладъ) ենք գըտնում։

Ահա այս պատճառներից են կախուած փո-

դի խնդրանքի տատանումները։ Եթէ ինձ հարկաւոր է վճարել իմ պարտքը, կամ եթէ ինձ համար վտանգաւոր է իմ արտադրութիւնները պահելը, ի հարկէ, ես պիտի աշխատեմ շուտով սաղացնել նրանց, թէկուզ արժան գնով, միայն թէ փող ստանամ։ Ապրանքներն էժանանում են, և հետևաբար, փողը թանկանում է։ Հէնց այս էլ կըլինի փողի խնդրանքի բարձրանալու հետեւանքը։

77. ԹՂԹԱԴՐԱՄ։ Ի վերջոյ մեզ մնում է երկու խօսք ասել թղթադրամի մասին։ Մինչև այժմ մենք խօսում էինք միայն դ ր ա մ ի մասին, այսինքն՝ մետաղեայ փողի մասին։ Սակայն ամեն մարդ գիտէ, որ գործ է ածում է նաև թղթադրամը։ Ռուսաստանում, օր., դրամական վճարումների համար գրեթէ միայն թղթադրամն է ծառայում։ Ի՞նչպէս կարող են նրանք գործածուել։ Վաճառելով մի չետվերտ ցորեն մի դրամի, որ արժէ 10 ռուբլի, ես ձեռք եմ բերում իմ ցորենի փոխարէն մի կտոր ոսկի, որ ունի բնական արժէք։ Եթէ այդ դրամը հալէինք և ձուլէինք որևէ իր, ես կարող էի նրան վաճառել և ոչինչ չէի կորցնիլ վաճառած ցորենի արժէքից։ Այն ինչ ցորենը փոխանակելով կարմիր թղթի հետ, որի վրա գրած է «տասն ռուբլի», ես ոչինչ չեմ ձեռք բերում, որովհետև այդ թղթի կտորի բ ն ա կ ա ն արժէքը շատ չնչին է։ Հապա ինչո՞ւ մարդիկ թղթերն ընդունում են ոսկու տեղ։ Ի՞նչ հիման վրա թուղթ փողն էլ անցնում է։

Միակ պատասխանը — դ է պ ի տ է ր ո ւ-

թիւնն եղած վստահութեան հիման վրա, բաց է թողնում թղթադրամը։ Տէրութիւնը բաց է թողնում թղթէ փող, հրամայում է հաշուել, որ նրանք որոշ գին ունին, ինքն ընդունում է այդ փողը նշանակած արժէքով։ Իմ ցորենը գնողից ես ընդունում եմ թղթադրամ նրա համար, որ հաւատում եմ, որ տէրութեան հրամանի համաձայն, նոյն տէրութեան սահմանում ամեն մարդ կընդունէ ինձանից այդ թղթադրամը և փոխարէնը կըտայ ինձ այն ապրանքը, որ ինձ հարկաւոր է, կընդունէ նաև գանձարանը, եթէ հարկաւոր լինի հարկ վճարել և կամ ուրիշ որևէ վճար կատարել։ Վերջապէս, ես ընդունում եմ թղթադրամը նրա համար, որ հաւատում եմ, թէ տէրութեան յայտարարած արժէքը՝ գինը ընդ միշտ կըմնայ անփոփոխ, և ես, հետևաբար, երկիւղ չեմ կրիլ, թէ կորուստ կունենամ, և կարող եմ իմ արժէքները պահպանել՝ թղթադրամ դարձնելով։ Հետևաբար, դէպի տէրութիւնն եղած վստահութեան հիման վրա թղթադրամը կարող է ծառայել, թէ իբրև փոխանակութեան միջոց, թէ վճարումների ժամանակ (փող տալիս առնելիս) և թէ արժէքները պահպանելու համար. ուրիշ խօսքով՝ թղթադրամը ծառայում է այն բոլոր նպատակներին, որոնց համար գործածւում է փողը։

78. ԹՂԹԱԴՐԱՄԻ ԲՆԱԿԱՆ ԵՒ ՇՈՒԿԱՅԻ ԳԻՆԸ։ Այսպէս ուրեմն, թղթադրամի համար բնական գնի տեղ ծառայում է տէրութեան

հրամանը, որ պարտաւորեցուցիչ է բոլորի համար (պ ա ր տ ա ւ ո ր ե ց ո ւ ց ի չ կ ո ւ ր ս—обязательный курсъ)։ Իսկ նրա շուկայի գինը կախուած է խ ն դ ր ա ն ք ի ց և ա ռ ա ջ ա ր կ ի ց։ Ենթադրենք թէ տէրութեան մէջ թղթադրամ բոլորովին չըկայ, այլ միայն ոսկի է գործածւում։ Եթէ յետոյ թղթադրամ թողնուի, ասենք թէ այնքան, որքան ոսկի կայ, հետևաբար, փողի քանակութիւնը կրկնակի կաւելանայ։ Փողը կրկնակի կէժանանայ։ Ոսկին դրամի մէջ աւելի էժան կըլինի, քան իրեղէնների մէջ։ Այնուհետև ձեռնտու կըլինի դրամի ոսկին հալել և նրանից իրեր ձուլել, այդ իրերը տանել ուրիշ երկիր, ուրտեղ դրամը էժան է և այլն։ Մի խօքով դրամի քանակութիւնը կըպակասի և պէտք է պակասի, մինչև որ բոլոր ոսկեդրամը գործածութիւնից դուրս գայ և մնայ միայն թղթադրամը։ Այն ժամանակ տէրութեան մէջ փող կըլինի ընդամենը այնքան, որքան կար առաջ։ Թղթադրամի շուկայի գինը կըբարձրանայ առաջուայ չափով։ Ասենք թէ էլի թղթադրամ դուրս տուին որև է քանակութեամբ։ Հետևաբար, նրա ա ռ ա ջ ա ր կ ն աւելանում է, իսկ խ ն դ ր ա ն ք ը չի աւելանում, ուստի թղթադրամի շուկայի գինը ընկնում է և այլն։ Եւ միշտ այսպէս կըլինի, քանի որ թղթադրամ դուրս կտրուի աւելի, քան հարկաւոր է երկրին մետաղեայ դրամ։ Որքան թղթադրամի առաջարկն աւելի է, այնքան նրա կուրսն ընկնում է։ Կուրսը կարող է բարձրանալ միայն այն ժամանակ, երբ թղթադրամի առաջարկը պակա-

սում է, այսինքն՝ երբ տէրութիւնը շրջանառութիւնից հանում է թղթադրամի որոշ քանակութիւն և նրան ոչընչացնում է։

## ԶՐՈՅՑ ՏԱՍՆԻՆՆԵՐՈՐԴ

### 3. Վարկ կամ կրեդիտ. اعتبار

79. Ի՞ՆՉ Է ՎԱՐԿԸ։ Փոխանակութեան ժամանակ յաճախ պատահում է, որ արժէքը տրւում է համարժէքն ստանալուց առաջ։ Շատ անգամ պատահում է, ապրանքը «պարտք» է տրւում, այսինքն՝ փողի այն գումարը, որ հաւասար է (համարժէք է) այդ ապրանքին, իսկոյն չի վճարւում, այլ մի ժամանակ յետոյ։ Կամ ընդհակառակը. յայտնի է, որ երբեմն, օր., գրաւական են տալիս ապագայ ցորենի կամ բրդի համար. այսինքն՝ գրաւականի արժէքին հաւասար (գրաւականին համարժէք) ապրանքը իսկոյն չի տրւում, այլ մի ժամանակ յետոյ։ Որովհետև այս երկու՝ ինչպէս նաև ուրիշ նման դէպքերում, փոխանակող մարդկանցից մէկը վստահութիւն է ցոյց տալիս միւսին, թէ վերջինս կըտայ առաջինին համարժէքը, ուստի արժէքների այսպէս տարբեր ժամանակ տալը կոչւում է վարկ կամ կրեդիտ (կրեդիտ խօսքն առաջ է եկել լատինական credo—կրէդօ, խօսքից, որ նշանակում է «հաւատ»)։ Առանց վարկի փոխանակութիւն չի կարող լինել։ Առաջին, ինչպէս

վերևն ասացինք, յաճախ պատահում է, որ ապրանքը վերցնում են փողը վճարելուց առաջ. կամ փողը վերցնում են—ապրանքը չըտուած։ Սա երբեմն անհրաժեշտ է լինում—և սա առևտրի մէջ սովորական, հասարակ երևոյթ է։ Երկրորդ, յաճախ երկու վաճառականներ իրար հետ շարունակ առևտրական յարաբերութիւն ունենալով, իրարից շարունակ ապրանք կամ փող ստանալով, ամեն անգամ իսկոյն հաշիւ չեն մաքրում, այլ մի որոշ ժամանակ, օր., մի տարի յետոյ։ Անյարմար է, որ նրանք իրար շարունակ փող ուղարկեն, նրանք հաւատում, վստահում են մէկը միւսի ազնւութեանը։ Ուստի նրանք միայն հաշիւ են պահում, թէ նրանցից իւրաքանչիւրը որքան պարտք ունի միւսին, քիչ պարտքը դուրս են գալիս շատից և շատ պարտք անողը վճարում է միայն տարբերութիւնը։ Երրորդ, երկրի մէջ միշտ էլ կան այնպիսի դրամատէրեր (կապիտալիստ), որոնք իրանք անկարող են գործի մէջ դնել իրանց դրամագլուխը։ Այդպիսիների թուին պատկանում են երեխաները, տկարամիտները, խելագարները և այլն և առհասարակ այն բոլոր մարդիկ, որոնք առևտրական գործերի հմտութիւն չունին և կամ անձամբ գործ վարելու ցանկութիւն չունին։ Այդպիսիների դրամագլուխները յանձնում են բանկերին կամ մասնաւոր մարդկանց, որոնք արդէն իրանց պատասխանատւութեամբ մտցնում են այդ գումարները շրջանառութեան մէջ։ Չորրորդ, մի մարդ որքան էլ հարուստ լինի, ամեն տեսակ

ձեռնարկութիւն մենակ չի կարող կատարել։ Շատ քիչ կայ այնպիսի հարստութիւն, որ բաւական լինի, օր., մի մեծ տարածութեան վրա երկաթուղի անցկացնելու համար։ Այսպիսի խոշոր ձեռնարկութիւններ գլուխ բերելու համար, շատ մարդկանց դրամագլուխները միացնում և յանձնում են այդ նպատակով ընտրուած մարդկանց, որոնք և վարում են գործը։

Ահա այն գլխաւոր դէպքերը, երբ հարկաւոր է լինում վարկը, կրեդիտը։

81. ՎԱՐԿԻ ՏԵՍԱԿՆԵՐԸ։ Նա, ով վստահութիւն է ցոյց տալիս, կոչւում է պարտատէր կամ փոխատու (կրեդիտոր). Նա, ում վստահութիւն են ցոյց տալիս, կոչւում է պարտապան կամ փոխառու։ Փոխ տալով՝ պարտատէրը յոյս ունի 1) կամ այն բանի վրա, որ պարտապանը կըկամենայ տալ իր պարտքը. 3) կամ այն բանի վրա, որ նա կարող է տալ։ Առաջին դէպքում պարտատէրը վստահութիւն է ցոյց տալիս ուղղակի դէպի պարտապանի անձը, դէպի նրա ազնուութիւնը։ Երկրորդում նա վստահանում է նրանով, որ պարտապանը բաւականին կալուածք ունի, որ չըվճարելու դէպքում կարելի է ծախել և պարտքը հանել. հաւատում է նրա ապահովութեանը։ Այստեղից վարկը լինում է երկու տեսակ. 1) անձնական և 2) կալուածական։ Անձնական վարկի դէպքում պարտատէրն իրան չի ապահովում պարտապանի որևէ ստացուածքով։ Վերջինս պարտաւորւում է վճարել իր պարտքը երբեմն

մի երրորդ անձի երաշխաւորութեամբ, երբեմն առանց երաշխաւորութեան։ Կալուածական վարկի դէպքում պարտատէրն իրան ապահովում է պարտապանի ստացուածքով, կալուածքով (գրաւ է վերցնում)։ Կալուածական վարկը կոչւում է լոմբարդային, եթէ իբրև գրաւական ծառայում է շարժական ստացուածքը, և գրաւային (инотечный), եթէ գրաւ ընդունւում է անշարժ կալուածքը։

82. ՎԱՐԿԱՅԻՆ ԹՂԹԵՐ։ Ամեն անգամ, երբ տրւում է որևէ արժէք, բայց փոխարէնն իսկոյն չի ստացւում նրա համարժէքը, ուրիշ խօսքով, ամեն «վարկային համաձայնութիւն» (кедитная сдѣлка) հաստատւում է որևէ թղթով, որ այս դէպքում կոչւում է վարկային թուղթ (кредитный знакъ)։ Այսպիսի թուղթ ունեցողը պայմանաժամը լրանալուց յետոյ ոչ միայն կարող է պահանջել պարտատէրից նրա համարժէքը (թղթի գինը), այլ ժամանակից առաջ մինչև անգամ կարող է ծախել այդպիսի թուղթը, ուրիշի ձեռքը տալ, նրանով վճարում կատարել, ի հարկէ, եթէ այդ թուղթը վերցնել ցանկացողներ լինին։ Առևտրականների մէջ հազիւ է պատահում, որ վարկային թղթերն անշարժ մնան։ Նրանք ձեռքից ձեռք են անցնում փողի տեղ են բռնում—ծառայում են իբրև փոխանակութեան միջոց, գործ են ածւում իբրև դրամ՝ ամեն տեսակ վճարների ժամանակ և

այլն։ Այժմ ծանօթանանք վարկային թղթերի ամենագլխաւոր տեսակներին։

83. 1) ՄՈՒՐՀԱԿ (ՎԷՔՍԵԼ)։ Ամենից շատ յայտնի է *վէքսելը*, *մուրհակը*։ Ով դրամ է փոխ առնում ուրիշից, նրան տալիս է մուրհակ, այսինքըն՝ գրում է առանձին՝ տէրութեան պատրաստի թղթի վրա (որի համար ստանում է յօգուտ գանձարանի մի որոշ վճար, նայելով պարտքի գումարին)—այս օրից, այսքան ամիս յետոյ, նա (պարտապանը) պարտաւոր է վճարելու այսինչ գումարը պարտատիրոջ, «*կամ ում նա հրամայ է*»։ Այս վերջին խօսքերը պարտատիրոջն իրաւունք են տալիս մուրհակը յանձնել ուրիշ մարդու, որի համար մուրհակի հակառակ կողմը նա *յանձնողական մակագրութիւն* է անում. սա էլ կարող է նոյն ձևով տալ՝ երրորդին և այլն։ Եթէ պարտատիրոջը փող է հարկաւոր մինչև մուրհակի պայմանաժամը, նա այն ժամանակ յանձնում է մասնաւոր մարդկանց կամ բանկին։ Այս դէպքում այն մարդը կամ հիմնարկութիւնը, որ ընդունում է մուրհակը, *գեղջում* է նրան (*դիսկոնտ*), այսինքըն մուրհակի գումարից—արժէքից (*վալիւտա*) իր օգտին դուրս է գալիս տոկոս մինչև պայմանաժամը մնացած ժամանակի համար։

84. 2) ՓՈԽԱԴՐԱԿԱՆ ՄՈՒՐՀԱԿԸ (ՏՐԱՏՏԱ) նպատակ ունի, որքա՜ն կարելի է, կրճատել դրամի փոխադրութիւնը երկրից երկիր։ Ասենք թէ Լոնդոնի վաճառական Բուլլը ցորեն է գնել Պետերբուրգի վաճառական Իվանովից, իսկ պե-

տերբուրգցի Սիդորովը մահուդ է գնել լոնդոնցի Տոմսընից։ Հիմայ Բուլլը պէտք է փող ուղարկէ Իվանովին, իսկ Սիդորովը—Տոմսընին. փոխանակ այդպէս անելու, կատարւում է հետևեալը. Բուլլը մուրհակ է ուղարկում Իվանովին. Սիդորովը գնում է այդ մուրհակը Իվանովից և իր պարտքի փոխարէն ուղարկում է Տոմսընին. իսկ վերջինս մուրհակի համաձայն ստանում է փողը Լոնդոնում Բուլլից։ Այսպէս պարտապանները վճարեցին իրանց պարտքը, պարտատէրերն ստացան իրանց առնելիքը առանց դրամի փոխադրութեան։ Պետերբուրգի վաճառական Իվանովը ստացաւ փողը պետերբուրգցի Սիդորովից. իսկ լոնդոնցի Տոմսընն ստացաւ Լոնդոնում Բուլլից։ Մեծ քաղաքներում, որտեղ արտասահմանեան առևտուրը շատ զարգացած է, արտասահման ստանալիք ունեցողները մուրհակներ են բերում բ ո ր ս ա (բիրժ). այստեղ միշտ գտնւում են մարդիկ, որոնք գնում են այդ մուրհակները, այսինքն՝ մարդիկ, որոնք արտասահման փող պէտք է ուղարկեն։ Եթէ այդպիսի մուրհակների (տրատտա) խնդրանքն առաջարկից շատ է, նրանց վճարում են մի քիչ աւելի. իսկ եթէ առաջարկը խնդրանքից շատ է—պակաս են վճարում (միայն թէ գինը փողի փոխադրութեան ծախքից չանցնի)։ Այն գինը, որով փոխադրական մուրհակները վաճառւում են բորսայում, կոչւում է մ ու ր հ ա կ ն ե ր ի կ ու ր ս ը, (вексельный курсъ), որ հրատարակւում է լրագիրների մէջ։

85. 3) ՉԷԿ։ Կանխիկ դրամ ունեցողները սովորաբար տանը չեն պահում, այլ բանկում— համ շահաւէտ է, համ ապահով։ Նրանք յանձնում են փողը բանկին՝ համոզուած լինելով, որ բանկը միշտ կվերադարձնէ, երբ հարկաւոր լինի։ Փող դնողներին բանկը տալիս է չէկի (կտրոնաւոր) գրքոյկ։ Փող դնողին եթէ հարկաւոր է լինում իր գումարի մի մասը; կամ բոլորը, նա կտրոնաւոր գրքոյկից կտրում է մի չէկ (մի թերթիկ) և նրա վրա գրում է հարկաւոր գումարը և ներկայացնում է անձամբ կամ ուրիշի ձեռքով բանկը։ Չէկի համեմատ փողը տրւում է նրան, ով որ ներկայացնում է այդ չէկը։ Այս պատճառով փող դնողը մասնաւոր մարդկանց փող վճարելիս՝ միշտ կարող է կանխիկ դրամի փոխարէն չէկ տալ։ Այս հանգամանքն այնպէս դիւրացնում է դրամական յարաբերութիւնները, որ առևտրական աշխարհում շատ յաճախ գործ են ածւում չէկերը և ահագին չափով տարածուած են։

86. 4) ԱԿՑԻԱ։ Արդէն գիտենք, որ մեծ ձեռնարկութիւնները կատարւում են մեծ մասամբ շատերի և ոչ մէկի դրամագլխով։ Նրանցից ամեն մինը փող է վեր գալիս և դրա համար ստանում է մի թուղթ, որ կոչւում է ակցիա, բաժնետոմս։ Այդ թղթի կամ ակցիայի տէրը կոչւում է բաժնետէր կամ ակցիօնէր։ Սա կարող է իր ակցիան ծախել ուրիշին։ Ակցիօնէր համարւում է այն մարդը, որի ձեռքում գտնւում է ակցիան։ Ձեռնարկութեան օգուտը

հաւասար բաժանում է ակցիաների վրա. ով 100 ակցիա ունի, նա տասն անգամ աւելի է ստանում նրանից, ով 10-ն ունի։ Բայց ակցիօնէրը ձեռնարկութիւնից վնաս էլ է տեսնում։ Այս դէպքում, ի հարկէ, նա *դիվիդէնտ* չի ստանում (դիվիդէնտ ծագում է լատինական—divideo—«բաժանում եմ» խօսքից) այսինքն չի ստանում օգուտից իր ակցիային հասանելիք մասը։ Այս դեռ քիչ է. նրա ակցիան կարող է իր արժէքը բոլորովին կորցնել։ Ո՞վ կըգնի այդ ակցիան, եթէ գործը վնաս է բերում։ Հետևաբար, կորչում է և այն գումարը, որ ակցիօնէրը վճարել էր ակցիան գնելիս։ Շուկայում ակցիայի գները տատանւում են խնդրանքին և առաջարկին նայելով։

87. 5) ՕԲԼԻԳԱՑԻԱ։ Այսպէս է կոչւում այն թուղթը, որ տալիս է կառավարութիւնը կամ արդիւնաբերական ընկերութիւնն այն մարդուն, որը տալիս է նրանց մի որոշ անհրաժեշտ գումար։ Պարզ է, որ օբլիգացիան շատ նման է մուրհակին։ Տօկոսը վճարվում է *կուպոնը* (կտրոնը) ներկայացնելիս, որը կտրւում է օբլիգացիայից պարբերաբար՝ որոշ ժամանակից յետոյ։ Օբլիգացիաները լինում են անուանական, իսկ առաւելապէս նրանց տէրն համարւում է նա, ում ձեռքին գտնւում են, «*ներկայացնողները*» (на предъявителя)։ Օբլիգացիայի տէրը — օբլիգացիօնէրը — պատասխանատու չէ ձեռնարկութեան վնասներին. բայց օգուտն էլ չի ստանում, բացի նշանակած տօկոսից։ Օբլիգա-

ցիաների գինը տատանւում է՝ նայելով խնդրանքին և առաջարկին։

6) Վերջապէս, վարկային թղթի մի տեսակն էլ բանկային տոմսն է (Банковые билеты), որ բաց են թողնում բանկերը և որ շատ նման է օբլիգացիային։

Այս բոլոր վարկային թղթերը—մանաւանդ ակցիաները, օբլիգացիաները և բանկային տոմսերը—շարունակ ձեռքից ձեռք են անցնում, փողի պաշտօն են կատարում և գնահատւում են այնքան բարձր, որքան մեծ վարկ ունի այն հիմնարկութիւնը կամ ձեռնարկութիւնը, որ նրանց բաց է թողել։

## ԶՐՈՅՑ ՔՍԱՆԵՐՈՐԴ

88. ԲԱՆԿԵՐԸ։ Արդէն ասացի, որ կանխիկ դրամ ունեցողները գերադասում են տանը փող չը պահել։ Նրանց համար շատ աւելի հաշիւ է և ապահով տեղաւորել իրանց դրամը մի վստահելի տեղ։ Միւս կողմից, միշտ էլ լինում են մարդիկ, որոնք ցանկանում են դրամ փոխ առնել։ Այս երկու նպատակներին բաւարարութիւն տալու համար գոյութիւն ունին մի տեսակ վարկային հիմնարկութիւններ, որոնք կոչւում են բանկ։ Բանկերն ազատում են դրամատէրերին իրանց փողային դրամագլուխները շահաւէտ կերպով տեղաւորելու հոգսից և պարտատէրերին հնարաւորութիւն են տալիս ձեռք բերելու հարկաւոր գումարը։ Այս երկու նպատակ-

ներին ծառայելով, բանկը պէտք է գործէ երկու ուղղութեամբ։ Մի կողմից նա դէպի ինքն է գրաւում փողը իբրև աւանդ կամ փոխառութիւն. միւս կողմից նա բաժանում է փողը, փոխ է տալիս փոխառուներին։ Բանկը նոյն բանն է անում փողի հետ, ինչ որ անում է սպունգը ջրի հետ. սպունգը ջուրը ծծեցէք—նա կըծծէ ջուրը. հանեցէք և սեղմեցէք—ջուրը կըքամուի։

89. ԱԿՏԻՒ ԵՒ ՊԱՍՍԻՒ։ Ինչ որ բանկը պէտք է ստանայ իր պարտապաններից, կոչւում է ակտիւ (պահանջ). ինչ որ բանկը տալու է իր պարտատէրերին, կոչւում է պասսիւ (պարտք)։ Բանկի գործողութիւնների (կամ ինչպէս ասում են օպերացիաների) այս երկու մասերը կախուած են իրարից։ Բանկը չի կարող երկար ժամանակով փոխատուութիւններ անել, եթէ ինքն աւանդ ընդունում է կարճ ժամանակով—այլապէս նա ինքը չի կարողանայ պայմանաժամին վճարել իր պարտքերը։ Պարտապաններից նա չի կարող աւելի փոքր տոկոս առնել, քան ինքը վճարում է իր պարտատէրերին,—այլապէս որտեղից կարող է վճարել տոկոսիքը։ Այստեղից բղխում է ընդհանուր կանոնը—բանկի ակտիւը որոշւում է նրա պասսիւով։

90 ԲԱՆԿԻ ՏԵՍԱԿՆԵՐԸ։ Երկու տեսակ բանկեր կան—առևտրական (коммерческіе-депозитные) և գրաւային (ипотечный)։ Առաջին կարգի բանկերը կատարում են անջնական

փոխատուութիւն՝ կարճ ժամանակով. այսինքն փոխ տալիս վստահանում են փոխառուի անձնաւորութեան վրա և տալիս են կարճ ժամանակով, որովհետև առևտրական աշխարհում համաձայնութիւններ (СДѢЛКИ) կայանում են սովորաբար կաճ ժամանակով։ Երկրորդ կարգի բանկերը կատարում են կալուածական (имущественный) կամ գրաւային (ипотечный) փոխատուութիւն՝ երկար ժամանակով։ Սրանց գլխաւոր նպատակն է փող տալ դրամ երկար ժամանակով՝ գրաւական վերցնելով հողեր և կալուածքներ։ Այն դրամադլուխները, որոնք գործադրւում են հողի վրա՝ զանազան բարեփոխութիւններ մտցնելով, աւելացնում են հողի եկամուտը ոչ միանգամից, այլ աստիճանաբար։ Ահա թէ ինչու գրաւային բանկերի փոխատուութիւնները միանգամից չեն վերադարձնում (ինչպէս առևտրական բանկերինը), այլ հետզհետէ, մաս-մաս, երկար ժամանակի ընթացքում—տասնեակ տարիների ընթացքում։

Բանկերը հիմնւում են կամ տէրութեան և կամ ակցիօնէրների փողով։ Պետական բանկերից յիշենք երկու տեսակը—գրաւային—գիւղական, հողային, որի նպատակն է գիւղացիներին օգնել հող գնելիս, և ազնուականութեան հողային—որի նպատակն է փող տալ ազնուականներին՝ գրաւ վերցնելով նրանց հողերը։

**91. ԱԿՑԻՕՆԵՐԱԿԱՆ ԵՒ ՓՈԽԱԴԱՐՁ ՎԱՐԿԻ ԲԱՆԿԵՐ։** Բանկ կարող են հիմնել դրամա-

տէրերը կամ իրանք փոխառուները։ Առաջին դէպքում ակցիաների վաճառքից ստացուած գումարը փոխ է տրւում կարիք ունեցողներին։ Երկրորդում—դրամը փոխ է տրւում միայն անդամներին։ Անդամն ընդունւում է ընտրութեամբ և վճարում է մի որոշ գումար, որ կոչւում է անդամակցական վճար, կամ փայ։ Ամեն անգամ իրաւունք ունի փոխ առնելու իր փայից մի քանի անգամ աւելի գումար։ Եթէ փոխ տալու համար փայերի դրամագլուխը չի բաւականացնում, պակասորդ գումարն ստացւում է մասնաւոր մարդկանցից կամ բանկերից իբրև աւանդ կամ փոխառութիւն. բոլոր անդամներն իրար երաշխաւորելով պատասխանատու են այդ գումարների համար։ Այս երկու տեսակ բանկերը լինում են և՛ գրաւային, և՛ առևտրական։ Տեղ-տեղ գիւղերում գոյութիւն ունեցող փոխատու—խնայողական ընկերութիւնները ներկայացնում են մանր բանկերի մի տեսակը նոյն հիմունքներով, այսինքն «փոխադարձ» օգնութեան և երաշխաւորութեան հիմունքներով։

92. ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆՆԵՐ։ Մենք գիտենք, որ շատ ձեռնարկութիւններ մի մարդու դրամադլխով գլուխ չեն գալ։ Առանձին դրամագլուխները շատացնելու համար դրամատէրերը միանում են և կազմում են ընկերութիւն, գործն ընկերովի վարելու համար։

93. ԼԻԱԿԱՏԱՐ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ։ Մի քանի տեսակ ընկերութիւններ՝ կան։ Առաջինն է լիակատարը։ Սա բաղկանում է սակաւաթիւ ան-

դամներից, որոնք իրանց պարտատէրերի առաջ պատասխանատու են իրանց ամբողջ կարողութեամբ և միասին վարում են գործը։ Այս դէպքում դրամագլուխները կարող են շատ նշանաւոր լինել, սակայն սրա անյարմարութիւնը նրանումն է կայանում, որ այս ընկերութիւնը հեշտութեամբ կարող է քանդուել. բաւական է, որ մասնակցողներից մէկը չհամաձայնի միւսների կարգադրութիւններին։

94. ՎՍՏԱՀՈՒԹԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (НА ВѢРѢ)։ Երկրորդ տեսակը կազմւում է 1) գըլխաւոր մասնակցողներից, որոնք պատասխանատու են իրանց ամբողջ գոյքով և վարում են գործը և 2) փող դնողներից, որոնք նրանց հաւատում են իրանց վճարը և վըտանգի դէպքում զրկւում են միայն դրամից։ Այս կարգի ընկերութիւններն աւելի ամուր հիմքերի վրա են, քան նախորդները։ Շատ կարեւոր գիւտեր չէին կարող ընդհանրանալ, եթէ չճարուէին մարդիկ, որոնք փող հաւատային գիւտի հեղինակներին։ Սակայն այս ընկերութիւնների մէջ էական վտանգը նրանումն է կայանում, որ գործը վարողները հեշտութեամբ կարող են ի չարը գործ դնել իրանց լիազօրութիւնը և շատ անգամ շահագործում են փող դնողների վստահութիւնը և փչացնում են նրանց փողերը։

95. ԱԿՑԻՕՆԷՐԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆՆԵՐ։ Վերջապէս երրորդ տեսակը բաղկանում է միայն ակցիօնէրներից։ Այս ընկերութիւնների մէջ ոչ-ոք պատասխանատու չէ իր ունեցուածքով, այլ

բոլորը ռիսկ են անում միայն այն դրամագլուխով, որ վճարել են ակցիօնէրին։ Գործը վարում է մի մարմին, որին ընտրում է ակցիօնէրների ժողովը։ Այս կարգի ընկերութիւնների շահաւէտ կողմը նրանումն է կայանում, որ միայն այս ճանապարհով կարելի է հաւաքել ահագին դրամագլուխ, որ կազմւում է համեմատաբար մանր վճարներից և անհրաժեշտ է այնպիսի մեծ ձեռնարկութիւնների համար, որպիսիք են, օր., երկաթուղիները։ Սակայն այստեղ էլ, ի հարկէ, գործի վարիչները շատ անգամ ի չարն են գործ դնում ակցիօնէրների վստահութիւնը։

**96. ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ ՈՒՐԻՇ ՏԵՍԱԿՆԵՐԸ։** Գործնական կեանքը և անհրաժեշտ կարիքներն ստեղծում են ուրիշ շատ տեսակ ընկերութիւններ, որոնք իրարից զանազանւում են իրանց նպատակով։ Բացի այն կարգի ընկերութիւններից, որոնք հիմնւում են առևտրական արդիւնաբերական նպատակներով՝ աւելի մեծ օգուտ ստանալու համար, առաջ են գալիս և ուրիշ ընկերութիւններ, երբ ժողովրդի կամ նրա որևէ մի մասի մէջ ծագում է մի որևէ ընդհանուր նպատակ, որին նրանք կարող են հասնել միայն միացեալ ույժերով։ Կան սպառողական ընկերութիւններ, որոնք ձգտում են իրանց անդամներին մատակարարել էժան գնով կենսական անհրաժեշտ պիտոյքները (ընկերութիւնը գումարով գնում է այդ պիտոյքները համեմատաբար շատ էժան գնով և, որքան կարելի է, էժան էլ ծախում է իր անդամներին և ուրիշներին)։

կան պահեստի ընկերութիւններ, որոնք պահեստի տեղ են տալիս անդամների արդիւնքներն ապահով պահպանելու համար։ Կան ընկերութիւններ, որոնք իրանց անդամների համար հում նիւթեր են ձեռք բերում։ Յետոյ կան նաև այնպիսի ընկերութիւններ, որոնց անդամները մասնակցում են ոչ միայն դրամական վճարով, այլ և իբրև բանւոր՝ իրանց աշխատանքով. այնպէս որ յանձին այդ բանւորների միանում են և՛ բանւորը, և՛ դրամատէրը—և նրանց ձեռքում ամփոփւում է և՛ դրամագլխի օգուտը, և՛ աշխատանքի վարձը։ Այս կարգին պատկանում են ռուսաց բանւորական խմբերը կամ արտելները, որոնք միացեալ ուժերով աշխատում են և իրանց մէջ հաւասար բաժանում են և՛ օգուտը, և՛ վնասը։ Այս կարգին են պատկանում նաև փոխադարձ օգնութեան բոլոր ընկերութիւնները, խնայողական արկղները, որոնք հիմնւում են իրանց անդամներին օգնելու համար հիւանդութեան, ծերութեան դէպքում, և ընտանիքին օգնելու համար՝ անդամի մահուան դէպքում և այլն։ Փոխադարձ օգնութեան այս բոլոր տեսակները իրանց կազմակերպութեամբ շատ նման են նրանց, որոնց մենք ծանօթացանք։ Նրանց պաշարը միշտ բաղկանում է ընկերների որոշ վճարներից և մանաւոր մարդկանցից և հիմնարկութիւններից փոխ առած գումարներից, եթէ վճարների գումարը չի բաւականացնում։ Պարտատէրերն ապահովւում են անդամների փոխադարձ լիակա-

տար կամ ոչ-լիակատար երաշխաւորութեամբ։ Այդ տեսակ ընկերութիւնների թիւը գնալով աւելանում է և նրանք գնալով աւելի բազմակողմանի են դառնում։ Մարդիկ, գնալով, աւելի ու աւելի համոզւում են, որ մի ընդհանուր գործի համար միանալը նրանցից ամեն մէկին կարողութիւն և հնարաւորութիւն է տալիս հասնելու այն բանին, որին հասնելու անզօր է մարդը, երբ նա մենակ է։ Շատ վաղուց հիւսուած է ճիպոտների առակը. մի ճիպոտ կոտրելը շատ հեշտ է. բայց ճիպոտների մի կապոց կոտրելը շատ դժուար է, իսկ երբեմն էլ անկարելի։ Փորձը ցոյց է տալիս, որ մեր նիւթական պիտոյքներին բաւարարութիւն տալու գործում մարդկանց ներդաշնակ և միահամուռ աշխատութիւնը միմիայն կարող է շատ-քիչ թեթևացնել աշխատանքի փշոտ ճանապարհը։

# ՀԱՐՑ Ր.

## Ա. ԶՐՈՅՑ

1. Ի՞նչ է արդիւնաբերական գործունէու-թիւնը։

2. Ո՞րքան անհրաժեշտ է նա մարդկանց։

3. Ի՞նչ է կարիքը և ի՞նչպէս է փոփոխւում նա զանազան ժամանակ և զանազան մարդկանց համար։

4. Ի՞նչ է անհրաժեշտ (առաջնակարգ) կա-րիք։

5. Ի՞նչպէս են նրանք փոփոխւում և ինչ պայմանների մէջ։

6. Ի՞նչն է կոչւում տնտեսական գործու-նէութիւն։

7. Որո՞նք են արդիւնաբերութեան տեսակ-ները։

8. Ի՞նչ կարևորութիւն ունի մարդուս տըն-տեսական գործունէութեան ուսումնասիրութիւնը։

9. Կարելի՞ է ուսումնասիրել նրան։

## Բ. ԶՐՈՅՑ, եր. 12.

1. Ի՞նչպիսի մասերի է բաժանւում մեր տարկան։

2. Ինչո՞ւ համար հարկաւոր է արտադրու-
թիւն, բաշխումն և փոխանակութիւն։

3. Ինչո՞ւ չի կարելի բաւականանալ մէկ բաժինն ուսումնասիրելով։

4. Ո՞ր հանգամանքներում չի լինիլ՝ բաշ-
խումն և փոխանակութիւն։

5. Արտադրութիւնը կարո՞ղ է չլինել։

## Գ. ԶՐՈՅՑ, եր. 16.

1. Որո՞նք են արտադրութեան երեք պայ-
մանները։

2. Ո՞րն է նրանցից կարևորը։ Կարելի՞ է կառավարուել առանց նրանցից որևէ մէկի։

3. Կարո՞ղ է մարդը ստեղծել նոր ոյժեր և նիւթեր։

4. Մարդը ինչո՞վ է հնազանդեցնում իրան բնութիւնը։

5. Ո՞րն է արդիւնաբերութեան յաջողու-
թեան անհրաժեշտ պայմանը։

## Դ. ԶՐՈՅՑ, եր. 21.

1. Ո՞րն է արտադրութեան երրորդ պայ-
մանը։

2. Ի՞նչ նշանակութիւն ունի աշխատանքը արդիւնաբերական գործունէութեան մէջ։

3. Որո՞նք են տնտեսական աշխատանքի յատկութիւնները։

4. Նպատակաւոր, մտաւոր և կարիքներին

բաւարարութիւն չըսուող աշխատանքի օրինակ։

5. Մասւոր աշխատանքի նշանակութիւնը։

6. Տնտեսական աշխատանքի ճիշտ սահմանումը։

## Ե. ԶՐՈՅՑ, եր. 27.

1. Ի՞նչպէս է փոփոխւում աշխատանքի քանակութիւնը հասարակութեան մէջ։

2. Ի՞նչ է կոչւում աշխատանքի գումար և արդիւնաւէտութիւն։

3. Որո՞նք են աշխատանքի քանակութեան աւերանալու պայմանները։

4. Ի՞նչ ազդեցութիւն ունին հասակը, սեռը, օրգանիզմի պիտանիութիւնը, հիւանդութիւնը, բանւորների թիւը, տօների քանակութիւնը։

5. Ի՞նչ է նշանակում—տնտեսապէս ձեռընտու է։

## Զ. ԶՐՈՅՑ. եր, 33.

1. Ի՞նչն է կոչւում աշխատանքի արդիւնաւէտութիւն։

2. Ի՞նչ է աշխատանքի բաժանում։

3. Որո՞նք են աշխատանքի արդիւնաւէտութեան աւելանալու պատճառները աշխատանքի բաժանման դէպքում։

4. Որո՞նք են աշխատանքի բաժանման վնասակար կողմերը։

5. Ի՞նչ է աշխատանքի պարզ և բարդ համախմբումը։

6. Ի՞նչ ազդեցութիւն ունի համախմբումը արդիւնաւէտութեան վրա և ինչո՞ւ։

## Է. ԶՐՈՅՑ, եր. 41.

1. Ի՞նչ է ստրուկը, ճորտը։ Ի՞նչով նրանք տարբերւում են իրարից։

2. Ի՞նչ է պարտաւորեցուցիչ և ազատ աշխատանքը։

3. Ի՞նչ ազդեցութիւն ունի արդիւնաւէտութեան վրա աշխատանքի ազատութիւնը։

4. Ի՞նչ է աշխատանքի գործիքը։

5. Ի՞նչ է աշխատանքի գործիքների պատկանելութիւնը։

6. Ի՞նչ ազդեցութիւն ունի այդ պատկանելութիւնը աշխատանքի արդիւնաւէտութեան վրա։

7. Ինչպէ՞ս է նկատւում այդ բանը երկրագործութեան և արհեստների մէջ։

8. Ի՞նչ ազդեցութիւն ունի գիտութեան զարգացումը աշխատանքի արդիւնաւէտութեան վրա։

9. Ինչո՞ւ համար անհրաժեշտ է գիտութիւնը արդիւնաբերական գործունէութեան մէջ։

10. Թուել աշխատանքի արդիւնաւէտութեան գլխաւոր պայմանները։

## Ը. ԶՐՈՅՑ, եր. 46.

1. Ո՞րն է արտադրութեան երրորդ պայմանը։ Որո՞նք են առաջին երկուսը։

2. Ի՞նչ է դրամագլուխը։

3. Արտադրութեան մէջ կարելի՞ է կառավարուել առանց դրամագլխի։

4. Ի՞նչպէս է կազմւում դրամագլուխը։ Ի՞նչպէս է ազդում աշխատանքի արդիւնաւէտութիւնը։

5. Ի՞նչպէս է գործադրւում դրամագլուխը։

6. Ի՞նչպէս կարող է ծախսուել այն ինչ որ խնայւում է։

7. Ի՞նչ տարբերութիւն կայ դրամագլխի և ուրիշ առարկայի ծախսուելու մէջ։

8. Կարելի՞ է դրամագլուխ համարել—տակառագործի մեքենան, հողը, տան կարասիքը, տիրոջ ուտելիքը, մշակի ուտելիքը, ձին, պարտէզը, կառքը, գութանը, հողի բարւոքումը, ոռոգումը, կաթսան։

## Թ. ԶՐՈՅՑ, եր. 52.

1. Ի՞նչից են կազմուած դրամագլուխները։

2. Ի՞նչ տարբերութիւն կայ դրամագլուխների ծախսուելու մէջ։

3. Ի՞նչ է շրջանառութեան և հիմնական դրամագլուխը։

4. Ինչի՞ց է բաղկանում թէ մէկը, և թէ միւսը։

5. Շրջանառութեան հիմնական դրամագլխի օրինակներ։

6. Ի՞նչ կարգի դրամագլուխ են—յարդը կտուրը ծածկելու համար, յարդը վառելու հա-

մար. գութանը նմուշի համար. գութանը վարելու համար. փայտը արհեստանոցի շինութեան համար. փայտը զանազան իրեր շինելու համար. սերմացուն. հացահատիկը մշակներին կերակրելու համար. ոստայնագործի մեքենան. որա փոքրադիր օրինակը (մոդել)։

7. Ե՞րբ ձեռնտու է շրջանառութեան դրամագլուխը հիմնականով փոխարինելը։

8. Ե՞րբ ձեռնտու չէ մեքենաներ մտցնելը։

## Ժ. ԶՐՈՅՑ, եր. 59.

1. Ի՞նչպէս է կոչւում մեր առարկայի երկրորդ մասը։

2. Ի՞նչն է կոչւում եկամուտ։

3. Ի՞նչ տեսակ եկամուտներ կան։

4. Ի՞նչպէս հաշուենք զուտ եկամուտը։

5. Ի՞նչն է ձեռնտու տիրոջ համար—ընդհանուր եկամուտի՞ թէ զուտ եկամուտի աւելանալը։

6. Ի՞նչն է ձեռնտու բանւորի համար—ընդհանուր եկամուտի՞ թէ զուտ եկամուտի աւելանալը։

7. Ե՞րբ աւել է ընդհանուր եկամուտը—շրջանառութեան թէ հիմնական դրամագլխի աւելանալիս։

8. Ի՞նչ մասերի է բաժանւում տնտեսութեան եկամուտը։

9. Քանի՞ մասի և ինչպէս է բաժանւում եկամուտը—երբ հողատէրը կապալով է տալիս իր

հողը գիւղացուն. խոշոր կապալառուին. երբ դարբինն աշխատում է գործատիրոջ մօտ. երբ նա դարբնոց ունի օտարի հողի վրա. երբ վարձկան բանւորներ ունի. երբ չունի. երբ գիւղացին բանւորներ չունի և ուրիշից հող չի վերցնում. երբ բանւոր չունի. երբ խոշոր հողատէրն ինքն է վարում իր տնտեսութիւնը։

10. Ի՞նչպէս պէտք է բաժանուի եկամուտը, երբ, օր., մէկին պատկանում է հասոյթը և օգուտը, իսկ միւսին—աշխատանքի վարձը։ Մէկին—հասոյթն և աշխատանքի վարձը, միւսին—օգուտը։ Մէկին—հասոյթը, միւսին—աշխատանքի վարձն ու օգուտը։ Միևնոյն մարդուն—և հասոյթ, և՛ օգուտը, և՛ աշխատանքի վարձը։ Մէկին—հասոյթը, միւսին—օգուտը, երրորդին—աշխատանքի վարձը։

## ԺԱ. ՁՐՈՅՑ, Եր. 65.

1. Ի՞նչ է հասոյթը։ Եկամուտը էլ ի՞նչ մասեր ունի բացի հասոյթից։
2. Ո՞վ է ստանում հասոյթը։
3. Ի՞նչ է կապալագինը։
4. Միևնո՞յն բանն է հասոյթ և կապալագին
5. Ինչո՞վ են զանազանւում նրանք իրարից։
6. Ո՞ր դէպքում կապալագինը կազմւում է միայն հասոյթից։
7. Ամե՞ն հող հասոյթ է բերում։

բերում։

8. Ի՞նչ տեսակ հողերի հասոյթն աւելանում է։

9. Ի՞նչպէս է փոխւում հասոյթի քանակութիւնը արդիւնքների տեղափոխութեան ծախքի աւելանալուց։

10. Ի՞նչից է ծագում հասոյթը։

11. Ի՞նչպէս հաշուենք տուած հողաբաժինների հասոյթը։

12. ԽՆԴԻՐՆԵՐ. 1) Որոշել հետեւեալ եկամուտն ունեցող հողաբաժինների հասոյթը. 1) № 1—1000 չետվերտ. № 2—800. № 3—400. 2) № 1—1500 չետվ. № 2—750. № 3—200. 3) Հաւասար եկամուտի դէպքում, երբ № 1-ի արտադրութեան ծախք և օգուտը=40 ր., № 2=20 ր., № 3=15 ր. 4) Նոյնը. № 1—80 ր., № 2—30 ր., № 3—5 ր., № 4—3 ր.

## ԺԲ. ԶՐՈՅՑ, եր. 69.

1. Ի՞նչ է օգուտը։ Ի՞նչպէս պէտք է հաշուել օգուտը։

2. Ո՞րտեղից է ստացւում օգուտը։

3. Ի՞նչ է բանուորական օրը։ Անհրաժեշտ և յաւելեալ բանուորական ժամանակ։

4. Ի՞նչ փոփոխութիւն կստանայ օգուտը, երբ անհրաժեշտ բանուորական ժամանակը աւելանայ, երբ յաւելեալ բանուորական ժամանակը աւելանայ (երբ անհրաժեշտը չի փոխւում), երբ բանուորական օրն աւելանայ (եթէ անհրաժեշտը չի փոխւում). երբ պակասի անհրաժեշտ բանուո-

բական ժամանակը. երբ յաւելեալը պակասի (եթէ անհրաժ. չի փոխւում). երբ բանւորական օրը պակասի (եթէ անհրաժ. չի փոխւում)։

5. Ի՞նչ փոփոխութիւն է ստանում օգուտը, երբ աշխատանքի վարձը աւելանում է. երբ պակասում է։

6. Ի՞նչ մասերի է բաժանւում օգուտը։ Ո՞վ է ստանում այդ մասերը։ Մէկ հոգի՞—թէ՞ շատերը։

Ի՞նչ ընդհանուր կանոն կայ օգուտի տատանումների վերաբերմամբ։

## ԺԳ. ԶՐՈՅՑ, եր. 75.

Ի՞նչ է աշխատանքի վարձը։

2. Ի՞նչ է բնական և շուկայի աշխատանքի վարձը։

3. Ի՞նչ ձևով է տրւում աշխատանքի վարձը։

4. Ի՞նչպէս է լինում դրամական վճարը։

5. Ի՞նչ ձեռնտու և վնասակար կողմեր ունին վճարի զանազան ձևերը։

6. Ո՞ր պարապմունքների մէջ աշխատանքի վարձը բարձր է և որոնց մէջ ցած։

## ԺԳ. ԶՐՈՅՑ, եր. 81.

1. Ի՞նչ է աւելանում արագ կերպով—հացի գի՞նը, թէ աշխատանքի վարձը։

2. Ի՞նչ փոփոխութեան է ենթարկւում ժամանակի ընթացքում հասոյթը։

3. Ի՞նչ փոփոխութեան է ենթարկւում ժամանակի ընթացքում աշխատանքի վարձը։

4. Ի՞նչպէս է ազդում այս հանգամանքը բանւորի դրութեան վրա։

5. Ի՞նչպէս է փոփոխւում օգուտը։

6. Ի՞նչպէս են ազդում նրանք արդիւնաբերութեան զարգացման վրա։

## ԺԵ. ԶՐՈՅՑ, եր. 85.

1. Մի՞շտ գոյութիւն ունէր փոխանակութիւնն այն ձևով, ինչպէս այժմ։

2. Ե՞րբ սկսեց զարգանալ փոխանակութիւնը։

3. Ի՞նչ է ապրանքը։

4. Ի՞նչ է օգտակարութիւնը (կամ սպառողական արժէքը)։

5. Ի՞նչ է փոխանակութեան արժէքը։

6. Ի՞նչ է գինը։

7. Փոխանակութեան արժէք ունեցող բոլոր առարկաներն ունին նաև սպառողական արժէք։

8. Սպառողական արժէք ունեցող բոլոր առարկաներն ունին նաև փոխանակութեան արժէք։

9. Ո՞րտեղից է ծագում ապրանքի փոխանակութեան արժէքը։

## ԺԶ. ԶՐՈՅՑ, եր. 91.

1. Ի՞նչով է չափւում բանւորական ժամանակը։

2. Ի՞նչ է բանւորական օրը։

3. Բանւորական ժամանակի ամէն քանակութիւն, որ գործ է դրւում ապրանքի արտադրութեան վրա, որոշում է վերջինի արժէքը։

4. Ի՞նչ է հասարակական անհրաժեշտ բանւորական ժամանակ։

5. Ի՞նչ է ապրանքի բնական արժէքը։

6. Ի՞նչ է նրա շուկայի գինը։

7. Ի՞նչից է կախուած ապրանքի բնական, շուկայի արժէքը։

8. Ի՞նչպէս է տատանւում շուկայի գինը։

9. Ի՞նչ է ապրանքի խնդրանքը։

10. Ի՞նչ է ապրանքի առաջարկը։

11. Ի՞նչ բացառութիւններ կան այս կանոնից։

## ԺԷ. ԶՐՈՅՑ, եր. 97.

1. Որո՞նք են փոխանակութեան (ապրանքը ապրանքի հետ փոխանակելու) անյարմարութիւնները։

2. Ինչո՞ւ համար է ծառայում փողը։

3. Փողի տեսակները։

4. Մետաղները ի՞ր յատկութիւններով փողի յարմար նիւթ են հանդիսանում։

5. Ինչո՞ւ բոլոր ազգերը ի վերջոյ գերադասում են իբրև դրամ գործ ածել «ազնիւ» մետաղները։

6. Ազնիւ մետաղներից որո՞նք են գործածւում իբրև փող։

7. Ինչու չեն գործածւում լուսնոսկին, թանկագին քարերը։

## ԺԸ. ԶՐՈՅՑ, եր. 102.

1. Ինչո՞վ է որոշւում ոսկու և արծաթի արժէքը զանազան իրերի մէջ։

2. Ինչո՞վ է որոշւում նրանց արժէքը դրամի մէջ։

3. Ի՞նչպէս է որոշւում փողի բնական արժէքը։

4. Ի՞նչպէս է որոշւում նրա շուկայի արժէքը։

5. Ի՞նչ է փողի կուրսը։

6. Ի՞նչ է փողի խնդրանքը։

7. Ի՞նչ է փողի առաջարկը։

8. Ինչպէ՞ս է ազդում փողի խնդրանքի վրա այն հանգամանքը, որ դրամը բաւարարութիւն է տալիս շատ վճարումների և ոչ մէկին։

9. Ինչի՞ն է հաւասար երկրում անհրաժեշտ դրամի քանակութիւնը։

10. Ի՞նչ պայմաններում աւելանում է փողի խնդրանքը։

11. Ի՞նչ է թղթադրամը։

12. Ի՞նչ է թղթադրամի բնական և շուկայի գինը։

13. Ինչու նրանք անցնում են բնական արժէք չունենալով։

14. Ի՞նչ պատճառներից ընկնում է թղթադրամի կուրսը։

## ԺԹ. ԶՐՈՅՑ, եր. 113.

1. Ի՞նչ է վարկը—կրեդիտը։
2. Ո՞ր դէպքերում նա անհրաժեշտ է։
3. Քանի՞ տեսակ է լինում վարկը։
4. Ի՞նչ է անձնական վարկ։
5. Ի՞նչ է կալուածական վարկ։
6. Ինչո՞վ են տարբերւում դրանք իրարից։
7. Որո՞նք են վարկային նշանները (թղթերը)։
8. Ի՞նչ է մուրհակը. մուրհակի զեղջը. փոխադրական մուրհակը (տրատտա). մուրհակային կուրսը. չէկը. չէկի գրքոյկը. ակցիան. օբլիգացիան. բանկային տոմսը. ակցիոնէրը. օբլիգացիոնէրը. դիվիդենտը։
9. Ի՞նչ է շահում և ի՞նչ կարող է կորցնել ակցիոնէրը, օբլիգացիոնէրը։
10. Օրինակներ այն մասին, թէ ի՞նչպէս վարկային թղթերը դիւրացնում են դրամական յարաբերութիւնները։

## Ի. ԶՐՈՅՑ, եր. 121.

1. Ի՞նչ է բանկը։ Ինչո՞ւ է հիմնւում նա։
2. Ի՞նչ է բանկի ակտիւը և պասսիւը։
3. Ի՞նչ հիմնական կանոն կայ ակտիւը որոշելու համար։
4. Ի՞նչ տեսակ բանկեր կան։
5. Ի՞նչ գրաւային բանկեր է հիմնել կառավարութիւնը Ռուսաստանում։

6. Ինչո՞վ են զանազանւում փոխադարձ օգնութեան և երաշխաւորութեան հիմքով հաստատուած բանկերը։

7. Ի՞նչ տեսակ ընկերութիւններ կան։

8. Ինչո՞ւմն է կայանում լիակատար, վըստահութեան և ակցիոնէրական ընկերութիւնների զանազանութիւնը, օգուտն ու վնասը։

9. Ի՞նչ ընկերութիւններ կան փոխադարձ շահի համար։